ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# Ե Ր Կ Ե Ր

## ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

## Ա

## ՊԱՏՄԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ- 2006

ՀՏԴ 941(479.25)
ԳՄԴ 63.3(2Հ)
Ա 205

**Ադոնց, Ն. Գ.**

Ա 205 Երկեր. հատ. Ա., Պատմագիտական ուսումնասիրություններ /Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը . - Եր., Երևանի համալս. հրատ., 2006, 652 էջ + 1 էջ ներդիր:

Նիկողայոս Ադոնցի երկերի առաջին հատորն ընդգրկում է հին և միջնադարյան Հայաստանի քաղաքական պատմությանն ու հոգևոր կյանքին, սոցիալ-տնտեսական հարաբերություններին նվիրված հիմնական աշխատությունները: Ներկայացված ուսումնասիրություններից շատերը կարևոր ներդրում են ոչ միայն հայագիտության, այլև ընդհանուր պատմագիտության բնագավառում:

Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:

Ա $\frac{0503020913}{704\ (02)\ 06}$ 2006 ԳՄԴ 63.3(2Հ)

ISBN 5-8084-0704-4





FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

ԵՊՀ հրատարակչությունը իր երախտագիտությունն է հայտնում

**ԳԱԼՈՒՍՏ ԳՅՈՒԼԲԵՆԿՅԱՆ**

հիմնարկության Հայկական բաժանմունքի տնօրեն

դոկտոր **ԶԱՎԵՆ ԵԿԱՎՅԱՆԻՆ,**

մեծանուն հայագետ Ն. Ադոնցի երկերի ժողովածուի

հինգհատորյակի հրատարակությունը նախաձեռնելու և

հովանավորելու համար:

***Խմբագրական հանձնաժողով***
***Հովհաննիսյան Պ. Հ., Մաղոյան Ա. Գ., Ստեփանյան Պ. Գ.***

***Հատորը հրատարակության պատրաստեց***

***Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ***

## ՊԱՏԿԵՐՆԵՐԻ ԽՆԴԻՐԸ
(էջ 246)

Գրված է 1930-ական թվականների երկրորդ կեսին Բրյուսելում: Բնագիրը պահվում է Համազգայինի Բեյրութի գրական արխիվի պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (պահարան Ա/Ա8, թ. 1-65): Լույս է տեսել մեր աշխատասիրությամբ՝ **Նիկողայոս Ադոնց,** Պատկերների խնդիրը, Երևան, 2003: Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Արևելաքրիստոնեական աստվածաբանական գիտակցությունը զատորոշում է պատկերի ընկալման հինգ մակարդակ՝ ուսուցողական, նշանագիտական, նվիրական-խորհրդապաշտական, ծիսական և գեղարվեստական, **տե՛ս Р. Р. Бычков,** Из истории византийской эстетики, "Византийский временник", 1976, № 37, стр. 187:– էջ 246:

2. Դա Տիրոջ չորրորդ պատվիրանն էր Մովսեսին. «Վերևում՝ երկնքում, ներքևում՝ երկրի վրա և երկրի խորքի ջրերի մեջ եղած որևէ բանի նմանությամբ քեզ կուռքեր չպիտի կերտես» (**Ելք**, Ի, 4): – էջ 247:

3. Նկատի ունի VI դարի երկրորդ կեսի հայ նշանավոր մատենագիր, եկեղեցական գործիչ Վրթանես Քերթողին: Հեղինակ է բազմաթիվ երկերի, որոնց մեջ գլխավորը «Յաղագս պատկերամարտից» գործն է: Այստեղ հեղինակը դատապարտում է պատկերամարտությունը և հիմնավորում պատկերների օգտագործման անհրաժեշտությունը (տե՛ս **Ե. Մելքոնյան,** Վրթանես Քերթողը և պատկերամարտությունը, «Էջմիածին», 1970, № Ձ-Է, էջ 89-90): – էջ 247:

4. Փիլոքսենոս (**Քսենայա**, V դ. կես - 523), եկեղեցական նշանավոր գործիչ, մտածող, մատենագիր: Ծայրահեղ միաբնակ, ձգտելով մերժել է Քրիստոսի նյութական մարմինն ընդունելը: – էջ 248:

5. Եվտիքյանների հերձվածողական վարդապետության հիմնադիրն է Եվտիքես Կոստանդնուպոլսեցին: Փորձել է հիմնավորել, թե Քրիստոսը, մարդկային բնության համաձայն, մարմին չի ունեցել, այլ այնպիսի, ինչպես կար մարդկանց ստեղծագործությունից առաջ՝ աստվածային և հավիտենական: – էջ 248:

6. Բեսեր (Բեշեր, Բշիր) Ուրացող, բյուզանդացի պատրիկ, որ Ասորիքում ռազմական գործողություններից մեկի ժամանակ գերի էր ընկել արաբների ձեռքը և ուրանալով ընդունել մահմեդականություն: Գերությունից ազատվելուց հետո ծառայության է անցել Լևոն III-ի մոտ՝ դառնալով վերջինիս պատկերամարտ քաղաքականության հիմնական գործակիցն ու կիրառողը: – էջ 249:

7. Ակնարկում է Բյուզանդիայի բռնատիրող Արտավազդ կայսրին (741-742): Հավանաբար Մամիկոնյան ընտանիքից. նախապես Արմենիակների, ապա՝ Օպսիկիոն բանակաթեմերի զորավար, կյուրապաղատ: Դառնալով կայսր, Արտավազդն անմիջապես վերականգնել է պատկերների պաշտամունքը: – էջ 251:

8. Խոսքը եկեղեցական ու քաղաքական նշանավոր գործիչ, պատմագիր, Կ. Պոլսի պատրիարք Նիկեփորի մասին է: – էջ 256:

9. Խոսքը IX դարի սկզբներին Փռյուգիայում և Լիկաոնիայում տարածված աթինգաններին աղանդավորական շարժման մասին է:– էջ 257:

10. Ակնարկում է Անատոլիկոն բանակաթեմի հրամանատար, Արևելքի զորքերի դոմեստիկոս, Վարդան (մականվանյալ «թուրք») զորավարին: 803 թ. հուլիսին հռչակվել է կայսր: – էջ 257:

11. Նկատի ունի աստվածաշնչային Յանես մոգին. «Եվ ինչպես Յանեսն ու Յամբրեսը հակառակվեցին Մովսեսին, այնպես էլ սրանք հակառակում են ճշմարտությանը. ապականված մտքով մարդիկ, անպետք՝ հավատի մեջ» (տե՛ս **Բ. Տիմոթ.,** Գ, 8): – էջ 260:

12. Լեկանոմանտես, բառացիորեն նշանակում է տաշտագուշակ: Մարդ, որ տաշտակի կամ լականի մեջ գուշակություններ անելով կանխատեսում էր ապագան: – էջ 210:

13. «Արդ, ո՞ւմ նմանեցրիք Տիրոջը, ո՞ւմ նման համարեցիք նրան: Միթե կո՞ւռք է նա, որին կերտել է արվեստավորը, և կամ ոսկերիչը, ձուլելով ոսկին, պատել է նրան ոսկով՝ պատկերի նմանություն ու կերպարանք տալով նրան» (**Եսայի**, գլ. 40, 18, 19):– էջ 260:

14. Նկատի ունի Կ. Պոլսի, Երուսաղեմի, Ալեքսանդրիայի և Անտիոքի պատրիարքներին : – էջ 269:

15. Սրբապատկերի նկատմամբ այսօրինակ «նյութապաշտ» մոտեցումը առհասարակ հատուկ էր ժողովրդական զանգվածների ըմբռնումներին, որոնց համաձայն պատկերի ներկը օժտված է բուժող ներգործությամբ (տե՛ս **В. В. Бычков,** Византийская эстетика, М., 1977, стр. 60): – էջ 270:

16. Ս. Հեղինեն (մոտ 250-330) Կոստանդին Մեծ կայսեր մայրն է: Նրան է վերագրվում Ս. Խաչի գյուտը, Բեթղեհեմի, Ձիթենյաց լեռան Ս. Համբարձման, Գեթսեմանի Ս. Աստվածածին եկեղեցիների շինությունը, ինչպես նաև Երուսաղեմի Ս. Հարության տաճարի հիմնարկեքը: – էջ 273:

17. Հայ առաքելական եկեղեցին որդեգրեց ճշմարտությունը հայելացնող միջին ուղին՝ **պատկերհարգություն** (մանրամասն տե՛ս **Ա. Մեղրակյան,** Հայաստանյայց եկեղեցու պատկերհարգությունը, մասն Ա, Ս. Պետերբուրգ, 1904): – էջ 280:

# ՊԱՏԿԵՐՆԵՐԻ ԽՆԴԻՐԸ

## 1. ՊԱՏԿԵՐԱՊԱՇՏՈՒԹՅՈՒՆ

Հնուց գոյություն ունեցող հարց է, բայց սուր կերպով հրապարակ իջավ VIII-IX դարերում: Եկեղեցու հայրերը, ինչպես ուրիշ շատ խնդիրներում, այս դեպքում ևս համերաշխ չէին և ունեին հակառակ կարծիքներ՝ երբեմն մեղմ, երբեմն կտրուկ և անհաշտ ոգով արտահայտված:

Հեթանոս աշխարհը կանգնած էր կուռքերի առաջ: Քրիստոնեությունը տապալելով անշունչ նյութերի պաշտումը, իր կողմից մշակում էր հետզհետե այնպիսի պաշտամունքներ, որ հեթանոսական մոլորության կերպարանք կարող էին ստանալ: Խաչի, Քրիստոսի Մարդեղության և Տնօրենության պատկերները, ինչպես և աստվածահաճո սրբոց նկարները սրբազան իրերի բարձր համարում էին ստացել:

Հեթանոսները և հրեաները հիմք ունեին մեղադրելու քրիստոնյաներին, որ անշունչ առարկաներ են պաշտում՝ քար և փայտ: Եվ կամ անտես և աներևույթ Աստծուն շոշափելի ձևով են ներկայացնում, այս կամ այն կերպարանքը տալիս:

Խաչի և պատկերների խնդրում որոշելու է երկու վերաբերում.

1) պատկերը որպես զարդարանք կամ ուսուցման միջոց, որ փոխարինում է անգրագետներին գիրը, կամ հորդորիչ միջոց բարեպաշտության և կրոնասիրության,

2) պատկերը որպես օրինակ նախատիպի, սուրբ և պաշտելի ինքնին (1):

Առաջին վերաբերումը կարելի է անվանել ընդհանուր խոսքով պատկերահարգություն: Երկրորդ՝ պատկերապաշտություն. *τιμή* և *λατρεία*. Կամ *ἡ τῆς τιμῆς προσκύνησις* և *ἡ τῆς λατρείας προσκύνησις* *τιμητική* և *λατρευτική*[1].

---

[1] Տակավին Բարսեղ Մեծն ասել է, որ պատկերի (իր իսկ հանդեպ) հարուցած հարգանքը պատկանում է նրա նախատիպին. ἡ γὰρ τῆς εἰκόνος τιμὴ πρὸς τὸν πρωτότυπον διαβαίνει (I, 21, Հովհաննես Դամասկացու մոտ. **Migne**, t. 94):

Ոմանք հենվելով Ելքի վրա[1], ժխտում էին դրականորեն պատկերները (2). մանավանդ երկյուղ էին կրում, որ կդառնար մի տեսակ կռապաշտություն: Էլվիրի (Elvira) ժողովը 306 թ. որոշում է 30 կանոն, որով արգելվում է սրբապատկերների պաշտամունքը՝ որպես կռապաշտություն placuit picturas in ecclesia esse non debere, nequod **colitur** et **adoratur** in parietibus depingatur[2]:

Եվսեբիոս Կեսարացու վերաբերումը նշանակալից է: Կոստանդին Մեծի քույրը՝ Կոստանցիա, խնդրել էր Եվսեբիոսից Քրիստոսի պատկերը: Եվսեբիոս հարց է տալիս, թե ի՞նչ պատկերի մասին է խոսքը: Արդյո՞ք Բանի պատկերը, որ է Հիսուս Քրիստոս: Սակայն ասված է, որ միայն Հայրը ինքը գիտե, թե ի՞նչ կերպ պիտի ունենա, ինչպե՞ս պիտի լինի Որդին: Կամ գուցե խոսքը նրա փառավորյալ Մարդեղության մասի՞ն է: Սակայն ինչպե՞ս կարելի է անշունչ գույների միջոցով ներկայացնել այն Մարդեղությունը, որ այլակերպյալ է և ողջովին սուզված աստվածային լույսի մեջ: Գուցե վերջապես Կոստանցիա խնդրում է Մարդեղության պատկերը նախքան Հարությունը և Համբարձումը: Սակայն միթե՞ Կոստանցիա չգիտեր, որ Ս. Գիրքը արգելում է կերտել պատկերը նրա, որ է երկրի վրա, թե երկնքում: Ուստի Եվսեբիոս ստիպված է մերժել նրա խնդիրը: Եվ որպես լուսաբանություն և հիմնավորումն իր մերժման, Եվսեբիոս ավելացնում է, որ տեսնելով մի կնոջ ձեռքին Քրիստոսի և Պողոս [Առաքյալի] ենթադրյալ պատկերները, խլեց, որպեսզի այս սովորությունը չընդհանրանա և ժողովուրդը չսկսե, կռապաշտների հետևությամբ, ներկայացնել Աստծուն պատկերների մեջ[3]:

Իր «Եկեղեցական պատմության» մեջ Եվսեբիոս նկարագրելով **Paneas** քաղաքի արձանը, ուր ներկայացված է տեռատես կինը և Քրիստոս, [այն] համարում է հեթանոսական նախապաշարմաց մնացորդք[4] (Վրթանեսի մոտ (3) ընդհակառակը, այս անդրին հիշվում է, որպես ապացույց պատկերապաշտության):

Պատկերապաշտությունը թվում է, [թե] արդեն տարածված էր, երբ սկիզբն առան առասպելներն ու զրույցները Քրիստոսի և Մարիամ Աստվածածնի անձեռագործ պատկերների մասին: Արքար թագավորին ղրկված պատկերի հրաշագործության մասին գիտե VI դարի պատմագիր

[1] **Ելից**, 20, 4:

[2] **Mansi**, t. II, 11.

[3] **Pitra**, Spicileguim, t. I, 383-386.

[4] **Eusebius**, VII, 18.

Եվագրիոս: Սրա ասելով, [պարսից] Խոսրով [թագավոր] չկարողացավ առնել Եդեսիան, շնորհիվ պատկերի պաշտպանության[1]:

692 թ. ժողովի 82-րդ կանոնը ընդունում է պատկերները որպես հարգելի և պատվիրում է Քրիստոսին ներկայացնել մարդու կերպարանքով և ոչ թե գառան[2]:

Պատկերների [վերաբերյալ] վեճերի մեջ կարևորը հարցի տեսական, աստվածաբանական կողմն է, որ երևան է գալիս ուշ, թեև, եթե հավատալու լինենք Թեոփանեսին, նախաձեռնությունը պատկանում է Մաբբուգի Փիլոքսենոս եպիսկոպոսին[3] (4): Նույնը կարծես հաստատում է և Հովհաննես Եփեսացին Յոթներորդ ժողովում՝ 787 թ., բերված և հերքված են սրանց վկայությունները[4]: Այս տեղեկության [համաձայն], Փիլոքսենոս [եպիսկոպոսը] կարծում էր, որ Քրիստոսին հարգել չէ նշանակում, երբ նրա պատկերներն են շինում: Նա աններելի էր համարում հրեշտակներին նկարել մարմնով, քանի որ նրանք հոգևոր էակներ են և տղայամտություն է Ս. Հոգին ձևակերպել որպես աղավնի: Այսպիսի հայացքներ ունենալով, նա ոչնչացնում էր հրեշտակների պատկերները և ծածկում նկուղներում՝ Քրիստոսինը:

Յոթներորդ ժողովում, Փիլոքսենոսի հետ, մեղադրվում են նաև Սեվերոսը, Պետրոս Ֆուլոն (Թափիչը) և ընդհանրապես միաբնակները:

Պատկերամարտությունն, այսպիսով, տեսական հողի վրա կապվում է միաբնակության հետ: Այս նկատումով շատ կարևոր է Եվսեբիոսի վերև հիշված դատողությունը: Ըստ Եվսեբիոսի, անկարելի է ներկայացնել Քրիստոսի մարդեղացումը, որովհետև նա այլափոխված է և աստվածացած և դարձել է $ἄληπτος$[5]: Եթե խնդրի վրա նայենք միաբնակ վարդապետության տեսանկյունից, ապա պիտի խոտելի համարվի Քրիստոսի պատկերագործությունը եվտիքյանների (5) աչքում, քանի որ մարդկայինը ձուլվում է աստվածայինի հետ և կլանված է նրանով: Անհնարին է մարդկայինը նկատել առանձին: Սեվերյանների օրինակով մարդկայինը ներկայացնել առանձին նշանակում է [այն] զատել աստվածայինից և, ուրեմն, նեստորական գործ կատարել: Աստվածայինը և մարդկայինը այնպես են միացված, որ անկարելի է դրանք ներկայացնել անջատ-անջատ, ինչ-որ անհնարին է, քանի որ մեկը սահմանափակ և պարագիր (circonscrit) է,

[1] **Evagr.**, Hist. eccles., IV, 26. P.G., t. 86, 2, col. 2745.

[2] **Mansi**, t. XI, 977-980.

[3] **Theoph.**, 5982.

[4] **Mansi**, t. XIII, 317 և 180-181.

[5] **Pitra**, Spicilcguim, t. I, 385.

մյուսը՝ անհուն և անստեղծ և անպարագիր: Պատկերների խնդիրն ուներ արտաքին և ներքին խթաններ: Արտաքինը գալիս էր օտար կրոններից՝ հրեական և մուսուլմանական համայնքներից, մանավանդ պավլիկյան աղանդավորներից: Ներքինը՝ եկեղեցական գործիչներ[ից], որ Ս. Գրքի հիման վրա և կամ քրիստոսաբանական տեսություններով դատապարտում են պատկերապաշտությունը: Սակայն կարևորը ազգայնական և աստվածաբանական մքնոլորտների տարբերությունն էր, որով տարվում էին Բյուզանդական կայսրության արևմտյան և արևելյան թևերը:

Արաբական խալիֆ Օմար II (717-720) և Բյուզանդիայի կայսր Լևոն III (717-741) միաժամանակ հանդես են գալիս պատկերների դեմ, ոչ անշուշտ, միևնույն և ընդհանուր պատճառներից դրդված և ոչ մեկը մյուսի ազդեցությամբ: Թեոփանեսի զրույցը Բեսեր Ուրացողի (6) մասին շինծու է թվում:

Փիլիպպիկոս Վարդան կայսրը, Նիկեփոր պատրիկի որդին, որպես թե նպատակ է ունեցել ջնջել պատկերապաշտությունը: Սակայն կանխահաս մահը արգելք է եղել գործին: Լևոն [III] Իսավրացի կայսրը փնռում է իրագործել: Տակավին մանուկ հասակում նա առիթ է ունեցել մի ուղևորության ընթացքին ծանոթանալ մի քանի հրեաների հետ, որ արտաքսված էին Սիրիայից Մուավիայի որդի Եզիդ [I-ի] օրով (680-683): Լևոն Իսավրացին նրանց ազդեցության ներքո սկսեց թշնամական վերաբերում ցույց տալ պատկերների հանդեպ: Հրեաներից մեկը, որպես թե կատակով, գուշակել էր, թե Լևոնը մի օր գահ պիտի բարձրանա և երդում էր առել, որ ոչնչացնե պատկերապաշտությունը[1]: Թեոփանեսի ասելով, երբ Լևոնը կայսր դարձավ, հիշեց իր խոստումը: Մի հրեա Փյունիկեի Լավոդիկիա քաղաքից, որին կոչում էին *Σαραντάπηχυς*՝ բառասուն կանգուն վիթխարի հասակի համար, և որ մոտ բարեկամն էր Եզիդ [II] խալիֆի (720-724), հավատացրեց խալիֆին, որ երեսուն տարի (ըստ Թեոփանեսի 40 տարի) կթագավորե, եթե վերացնե պատկերապաշտությունը: Եզիդ խաբված՝ հրաման արձակեց նույն մտքով: Սակայն ինքը շուտով մեռավ, հակառակ մարգարեության: Քսան տարի անցավ և գահ բարձրացավ Եզիդի որդին՝ Վալիդ [II] (743-744), որը սուտ մարգարեին պատժեց՝ մահվան տալով իր խաբեբայության համար:

Լևոն [III-ը] նախանձով էր նայում մուսուլման տիրակալների նախաձեռնությանը մի խնդրում, որ մոտ էր իր սրտին: Մի սիրիացի *Βησήρ* անունով, օգտվեց Լևոն [կայսեր նման] պատրաստի տրամադրությունից և

---

[1] Հրեան իբր թե մի օր ասել է նրան. «Բարեկամս, եթե իրոք կայսր լինես, դու հարկավ կոչնչացնես բոլոր այս պիղծ պատկերները»:

նրան մղեց գործի: Բեսերը ծնված էր քրիստոնյա, գերի էր ընկել արաբների ձեռքը, կրոնափոխ եղել և փրկվել ստրկությունից: Մարմնավոր ուժի և ճարպկության շնորհիվ ընկնում է կայսերական դուռը և սադրում Լևոնին պատկերամարտության: Մյուս գործակիցներն էին Փռյուգիայի Նակոլիա քաղաքի եպիսկոպոս Կոստանդինը, Կլավդիոպոլիս քաղաքի եպիսկոպոսը, Թովմասը և Եփեսոսի արքեպիսկոպոս Թեոդոսիոսը, որ էր որդի Տիբերիոս III կայսեր[1]:

726 թվին Լևոն [III-ը] արձակեց իր հրամանագիրն ընդդեմ պատկերապաշտության, հայտարարելով, որ ինքը և՛ կայսր է և՛ նվիրապետ *βασιλεὺς καὶ ἱερεύς εἰμί:*

Հրամանագիրը մեզ չի հասել և դժվար է որոշել բուն իմաստը: Մայրաքաղաքում և արևմտյան երկրներում՝ Իտալիա, Հունաստան և կղզիներ, մեծ ցույցերով ընդդիմացան հրամանին: Վերջիններս անգամ ապստամբություն հայտարարեցին և ոմն Կոզմասի կայսր ընտրեցին և մի նավատորմով ղրկեցին Լևոն [III-ի] դեմ, սակայն 18 ապրիլի 726 թվին ձախողեցին[2]:

[Կայսրության] արևելյան մասը խաղաղ մնաց: Պատրիարք Գերմանոսը միայն 730 թվին ստիպված էր հրաժարվել գահից և քիչ հետո խեղդամահ եղավ: Նրա հաջորդը՝ Անաստասիոս Սինկելլոսը համակերպվեց կայսեր քաղաքականության:

Ասորական արևելքից պատկերամարտության դեմ եղավ Հովհան Դամասկացին: Առաջին ճառը արտասանված է 726 թ., երկրորդը՝ 730 և երրորդը՝ քիչ հետո[3]: Սրա տեսության հիմնական հոդվածներն են, որ Աստված, անտարակույս, անտեսանելի, անպարագիր և անմարմին է և ուրեմն չի կարելի նրան ներկայացնել որևէ զգայական պատկերով, թեև մարգարեներին երևում է շոշափելի ձևով[4]:

Սակայն Աստված մարդացել է և ուրեմն կարելի է նրան նաև նկարել և ներկայացնել մարդկային ձևի տակ. *οὐ τὴν ἀόρατον εἰκονίζω θεότητα, ἀλλ᾽ εἰκονίζω θεοῦ τὴν ὁραθεῖσαν σάρκα*[5]՝ «Ոչ եթէ զանտեսանելին

[1] **Mansi**, t. XIII, 100 և հտ., ուր հիշվում են առաջին երկուսը, Թեոդոսիոսի մասին տե՛ս **Mansi**, t. XII, 967:

[2] **Nicephori**, p. 1-77.

[3] **Migne**, P[atrologia] G [raeca], t. 94, col. 1232-1420.

[4] Նույնը, I, 4; II, 7, 11; III, 4, 9, 24:

[5] Նույնը, I, 4, 16; III, 6:

պատկերացուցանեմ Աստուածութիւն, այլ պատկերացուցանեմ զտեսանելի մարմինն Աստուծոյ»: Այսպես և պատկերացնել կարելի է նաև Ս. Կույսին և սրբերին և ընդհանրապես բոլոր մարմնավոր էակներին[1]: Նույնը և հրեշտակների, դևերի և մարդկային հոգիների նկատմամբ: Ճիշտ է, համեմատելով երկրային մարմինների հետ սրանք աննյութ են, սակայն մարմին ունեն (*σώματα*), եթե համեմատենք Աստծո հետ այն մտքով, որ սահմանափակ են, որոշ տեղ են բռնում և շոշափելի ձևով էլ երևացել են մարգարեներին և արդարներին[2]: Պատկերագրությունն ուրեմն թույլատրելի է, սակայն վեճի էական մասն այն է, թե գործածության ի՞նչ [ոլորտ] պիտի ունենա նկարը: Կան, որ հենվելով Ս. Գրքի վրա, ընդհանրապես դեմ են պատկերի գործածությանը: Դամասկացու կարծիքով, Ս. Գիրքը նախ հետևողական չէ, անպայման ընդդեմ չէ, երկրորդ՝ պարտավորիչ չէ, քանի որ մենք գտնվում ենք ոչ թե հին օրենքի, այլ շնորհի տակ:

Ի՞նչ վերաբերում պիտի ցույց տալ դեպի պատկերները: Դամասկացի զանազանում է սոսկ հարգանքը պաշտամունքից: Տալ հարգս արժանավորին, երկրպագել *προσκύνησις τιμητική* այլ է, և այլ *ἡ τῆς λατρείας προσκύνησις*, կամ պաշտամունք իսկական: Ուրեմն որոշելու է պատկերահարգությունը պատկերապաշտությունից, սովորական հարգանքը, սերը, ակնածությունը կամ պատկառանքը՝ կրոնական պաշտամունքից (Տիրոջ պատկերին կամ Ս. Կույսի և կամ սրբերի, նրանց նշխարների, խաչի տված հարգանքը կրոնական է):

Դամասկացին ավելացնում է նաև, որ անգրագետների համար նկարը գիրք է. *ὅπερ τοῖς γράμμασι μεμνημένοις ἡ βίβλος τοῦτο καὶ τοῖς ἀγραμμάτοις ἡ εἰκών*[3]:

Պատկերներն այս մտքով հիշեցնում են և կենդանի պահում Տիրոջ Տնօրենությունն և վերջապես քաջալերում են մեզ նմանել սրբերի օրինակին: Դամասկացու մյուս տեսությունն այն է, որ սուրբ անձանց պատկերները ներկայացնելով, դրանք [պատկերները] կարծես մի տեսակ սրբանում են, շնորհ են ստանում. *χάρις δίδοται θεία ταῖς ὕλαις διὰ τῆς εἰκονιζομένων προσηγορίας*[4]:

Լևոն [III-ը] մեռավ 741 թվի հունիսի 18-ին, առանց կարողանալու զգալի հարված տալու պատկերապաշտությանը: Միայնակի Փոքր Ասիան էր նրա հենարանը: Նրա որդին՝ Կոստանդին [V] Կոպրոնիմոսը, որոշեց իրագործել հոր ծրագիրը: Առաջին տարին Արտավազդի (7) ապստամբությունը արգելք

[1] **Migne**, P[atrologia] G [raeca], I, 19; III, 24.

[2] Նույնը, III, 25:

[3] Նույնը, I, 17, (col. 1248c):

[4] Նույնը, I, col. 1264; I, 16; II, 14:

եղավ: Արտավազդը հաջողեց տիրանալ մայրաքաղաքին և վերականգնել պատկերների պաշտամունքը 741 թվին: Սակայն Արտավազդի հաղթանակը ժամանակավոր էր: Կոստանդին [V-ը] զորեց [ընկճեց] իր հակառակորդին և մայրաքաղաք մտավ 742 թ. նոյեմբերին: Սպասեց վայր մի [մի պահ] մինչև որ իշխանությունը հաստատեց վերջնականապես և 743 թվին նորեն կրոնական գործին կպավ:

Կոստանդին [V] զգաց, որ ամենից առաջ հարկավոր էր ժողով գումարել և հոգևորականության հավանությունը երաշխավորել: Այնուհետև միայն պետությունը կարող էր հիմնել իր անելիքը ժողովի վճիռների հիման վրա: Հիերիայի (Hieria) պալատում 753 թվի փետր[վարի] 10-ին գումարվեց ժողով՝ մասնակցությամբ 338 եպիսկոպոսների: Բացակա էին Անտիոքի, Երուսաղեմի և Ալեքսանդրիայի պատրիարքությունները, ինչպես և [Հռոմի] պապը չուներ իր ներկայացուցիչները: Նախագահում էր Եփեսոսի Թեոդոսիոս արքեպիսկոպոսը: Դժբախտաբար ժողովի արձանագրությունները մեզ չեն հասել, մնացել են միայն որոշումները (*ὅρος*) և նզովականները՝ պահպանված VII ժողովի (787 թ.) գործերի մեջ[1]:

Ժողովը գտնում է, որ

1. Անկարելի է և անթույլատրելի կրոնական պատկերներ շինել, գործածել և պաշտել: Եթե մեկը ձգտե Հիսուս Քրիստոսին ներկայացնել ամբողջովին և որպես Մարդ և Աստված միաժամանակ, դրանով կպարագրե, կպարփակե աստվածայինը և կշփոթե բնությունները: Կամ եթե ձգտե ներկայացնել Քրիստոսի միայն մարդկայինը, նա դրանով կբաժանե սյն, ինչ որ պետք է միացած լինի, այսինքն՝ կկազմե մի մարմին *ἀθέωτος*, ուրեմն կմեղանչե նեստորականության մոլորությամբ: Հետևապես, ով որ պաշտե այսպիսի մի պատկեր, հաղորդակից կլինի նույն մոլորության: Միակ պատկերը, որ Հիսուս Քրիստոս մեզ է ավանդել, ինքն է՝ հաղորդությունը, հաց և գինի:

2. Գալով Ս. Կույսի և սրբերի պատկերներին, անթույլատրելի են եկեղեցու կողմից, որ խորշում է կուռքերի կռապաշտությունից: Ժողովը կարծում է, որ սրբերի պատկերներ շինելը ոչ մի կերպ չի կարելի բարեպաշտություն համարել, քանի որ սրբերն ապրում են Աստծո հետ և ամբարիշտություն է պատկերների միջոցով երկատել նրանց երկնային կյանքը: Ոչ թե հարգել, այլ անարգել է նշանակում նրանց լուսավոր անձերը պատկերացնել պիղծ նյութի միջոցով:

---

[1] **Mansi**, t. XIII, 208-356. վեցերորդ նիստի արձանագրությունները, ուր բերված են որոշումները և նրանց հերքումները:

3. Ժողովը պատվիրում է, որ բոլոր պատկերները՝ նկարած, թե այլ կերպ շինած, պետք է հանել եկեղեցիներից, որպես խոտելի և կշտամբելի հավատի տեսակետից: Ով որ համարձակվի շինել կամ պաշտել կամ եկեղեցում կախել, կամ դնել իր տանը և կամ ծածուկ պահել, կարգալույծ կլինի, եթե եպիսկոպոս է, քահանա կամ սարկավագ, և կբանադրվի, եթե աշխարհական է կամ վանական[1]:

4. Զգուշացնում է ոչնչացնել սրբազան պատկերազարդ անոթները՝ պատկերամարտության պատրվակով:

5. Նզովք՝ Գերմանոս պատրիարքին, Գևորգ Կիպրացուն և Մանսուրին [Հովհաննես Դամասկացուն]:

Կոստանդին [V] կայսրը մեռավ 775 թվի սեպտեմբերի 14-ին: Պատկերապաշտների բանակը տակավին հաղթված չէր: Արևմուտքում Հռովմը դեմ եղավ 769 թվի Լատերանի ժողովին, իսկ Արևելքում՝ Երուսաղեմում, 767 թվին գումարվեց ուրիշ ժողով, երեք պատրիարքությունների ներկայացուցիչներից, դարձյալ ընդդեմ պատկերամարտության:

Այս վերջին հանգամանքը վկայում է պերճորեն, որ պատկերամարտության շարժման դրդիչները որոնել Սիրիա և Եգիպտոս անհիմն է: Շարժման բույնը Փ[ոքր] Ասիան էր: Արտավազդի օրինակը ցույց է տալիս, որ քաղաքական նկատառումներն էին առաջնորդում գործիչներին, եթե հարում կամ խորշում էին պատկերամարտությունից: Այդ օրինակը չի կարող հիմք համարվել ո՛չ Փ[ոքր] Ասիայի և ո՛չ էլ հայերի իսկական դիրքը որոշելու շարժման մեջ: Երևում է, որ շարժումը ազգայնական դրոշակ չուներ, այլ ազատամտական երևույթ էր, որ համակրողներ ուներ ամենուրեք և մանավորապես Հալիսի և Եփրատի ափերին, պավլիկյանների ազդեցության տակ և նրանց հետևողությամբ:

Կոստանդին [V-ի] որդին՝ Լևոն [IV] Խազարը շարունակեց հոր քաղաքականությունը: Երբ 780 թ. սեպտեմբերի 8-ին մեռավ, կինը՝ աթենացի Իրենեն, անցավ կառավարության գլուխ, որպես խնամակալ իր մանուկ որդու՝ Կոստանդին [VI] Ծիրանածնին: Իրենեն պատկերապաշտ էր և ամեն ջանք գործեց ջնջելու 753 թվի ժողովը: 784 թվի դեկ[տեմբերի] 25-ին պատրիարքական գահը վիճակվեց Տարասիոսին, որ կայսերական քարտուղար էր և համամիտ Իրենեի:

[1] Հալածանքների և մանավանդ նահատակների մասին զրույցները խիստ չափազանցված են: Հազիվ մի քանի անուններ են թվում, որոնցից կարևորագույնն է թերևս Ստեփանոս Կրտսերը (տե՛ս **Migne**, t. 100, col. 1120):

786 թվի օգոստոսի 17-ին տեղի ունեցավ առաջին ժողովը, բայց անհաջող: Պահակ զորագունդը ընդդիմանում է թագուհու ձեռնարկին: Սա ստիպված էր արձակել ժողովը: Երկրորդ ժողովը զգուշությամբ նշանակվեց Նիկիա քաղաքում՝ 787 թվի սեպտ[եմբերի] 24-ին, որ և կոչվեց **յոթներորդ** ժողով: Ներկա էին 333-337 անձն: Այստեղ էին Հռոմի պապի երկու ներկայացուցիչները, իսկ Երուսաղեմի, Անտիոքի և Եգիպտոսի պատրիարքները անհաղորդ էին, թեև երկու վանական՝ Հովհաննես և Թովմաս, իրենց համարում էին նույն վիճակների հոգևորականության բերան: Ժողովի ութ նիստերից միայն երկուսը զբաղվեց մեզ հետաքրքրող հարցով: Դ-րդ նիստին (հոկ[տեմբերի] 1-ին) կարդացին Ս. Գրքի վկայությունները, ինչպես և Ս. Հայրերից քաղվածքներ, որ ի նպաստ էին պատկերների:

Ժողովը ընդունեց, որ կարելի է համբուրել խոնարհաբար (*ἀσπαζόμεθα*) խաչի նկարը, և հետևելով եկեղեցու ավանդություններին՝ հարգանք մատուցանել (*τιμητικῶς προσκυνοῦμεν*) Տիրոջ, Ս. Կույսի, հրեշտակների պատկերներին և նույնպես սրբերի[1]: Զ-րդ նիստը նվիրված էր 753 թ. Հիերիայի ժողովի որոշումներին և նրանց հերքման[2]: Է-րդ նիստը ձևակերպեց ժողովի որոշումները[3]: Ժողովը սահմանեց, որ խաչի, Տիրոջ, Ս. Կույսի, հրեշտակների և սրբերի պատկերները ցուցադրելի են և կարելի է համբուրել և մատուցանել նրանց հարգանքի երկրպագություն (*ἀσπασμὸν καὶ τιμητικὴν προσκύνησιν*), միայն Աստծուն վերապահելով պաշտամունքի երկրպագությունը (*τὴν ἀληθινὴν λατρείαν*): Բացի սրանից, պատկերների առաջ կարելի է խունկ ծխել, մոմեր վառել, ինչպես անում են խաչի և Ավետարանի առաջ, այն հավատքով, որ պատկերին մատուցած հարգանքը վերաբերում է իրապես պատկերի ինքնատիպին[4]:

Վերջին նիստը տեղափոխեցին մայրաքաղաք, այն կայացավ Magnaura պալատում 787 թվի հոկ[տեմբերի] 23-ին, որից հետո ձեռնամուխ եղան անհետացնելու պատկերամարտների գրությունները:

Ժողովի որոշումներից երևում է, որ արդյունքը չէ համապատասխանում հարուցած աղմուկին և, որ Ս. հայրերը ստիպված են եղել բռնել միջին ճանապարհը՝ մեծ զիջումներ անելով իրենց հակառակորդներին: Նախ Հայր Աստծո պատկերը չի հիշվում բնավ: Ասել է, թե պատկերամարտների տեսությունը այս կետում հաղթանակել է: Հիսուս Քրիստոսի նկարը թույլ տալը բացատրվում է Մարդեղության պարագայով: Բացի սրանից, ժողովն

[1] **Mansi**, t. XIII, 1-156.

[2] Նույնը, 204-364:

[3] Նույնը, 364-413:

[4] Նույնը, 377:

իրապես ընդունում է հակառակորդների տեսակետը, որ պատկերները պաշտելի չեն, այլ միայն հարգելի: Այլ է հարգանք, այլ է կրոնական պաշտամունք: Գուցե ծայրահեղ պատկերամարտներ կային, որ ժխտում էին անգամ հարգանքը, սակայն կային և ծայրահեղ պատկերապաշտներ, որոնք պատրաստ էին պաշտել պատկերներ, որպես իրական սրբություններ, ինքնատիպը փոխարինող: *τιμή* և *λατρεία* գաղափարները պարզելուց և միմյանց զատելուց հետո, ինչպես վեճը կրոնական մտքով վերջացած պետք է համարել և դժվար է ասել, թե հաղթանակը որի կողմն է՝ պատկերապաշտների, թե պատկերամարտների: Ամբոխը չի սիրում և չի կարող միջին գծի վրա կանգնել: Պատկերահարգությունը դարձավ պատկերապաշտություն, և սա է հաղթողների կասկածելի առավելությունը հանդեպ իրենց հակառակորդների, որոնք զգալով այս կսրճելիությունը, ընդդիմանում էին պատկերների գործածությանը:

Յոթներորդ տիեզ[երական] ժողովը (787 թ.) մի նշանավոր մոմենտ է պետության և եկեղեցու հարաբերությունների և պատմության մեջ[1]: Ժողովին նախագահեց ինքը՝ պատրիարքը, փոխանակ կայսեր: Այս զիջումը բացատրելու է մասնավորապես նրանով, որ պատրիարքը՝ Տարասիոս, պետական նախկին պաշտոնյա էր, աշխարհականությունից կոչված պատրիարքական աթոռ, և վայելում էր կայսեր վստահությունը: Ամեն պարագային այս ժողովը մի նոր սկզբունք առաջ բերավ, որ դավանաբանական խնդիրները ենթակա են եկեղեցու իրավասության և եկեղեցին միանգամայն անկախ է այսպիսի վեճերում պետության միջամտությունից: Մյուս հարցերում, որ վերաբերում են օրենսդրության և վարչության, կայսրը պահում է իր վճռական ձայնը: Հայտնի է, որ Կոստանդին Մեծի օրվանից կայսերական իշխանությունը հենվում էր եկեղեցու վրա, որպես պետական մի գործակալության վրա: Կայսրը, ինչպես հայտարարում էր Կոստանդին V Կոպրոնիմոսը, «և՛ կայսր է և՛ նվիրապետ»: Եկեղեցական ժողովները կայսրերն էին գումարում և իրենք էլ նախագահում, ինչպես մի տեսակ ծերակուտական ժողով: Ընդունված էր, որ եկեղեցական ժողովների սահմանած կանոններն արժեք ունեին միայն այն ժամանակ, երբ անցնում էին կայսերական օրենսդրության խողովակով և հայտարարվում էին որպես օրենք: Երբեմն գումարվում էին խառն ժողովներ՝ պետական և եկեղեցական պաշտոնյաներից: Եկեղեցու մեջ հաճախ ձայներ էին լսվում և ճիգեր թափվում, որ եկեղեցին ազատ համարվի պետության ճնշումից և գործն որպես անկախ և ինքնուրույն մի

[1] H. Gelzer, Das Verhältniss, p. 193.

հաստատություն: Երկու հակադիր և ծայրահեղ հոսանքների մեջ հաշտարար դիրք էր բռնել երրորդ ուղղությունը, որին կողմնակից էր և Տարասիոսը: Նա ևս պնդում էր, որ եկեղեցին անկախ ճանաչվի գեթ դավանաբանական կնճիռները հարթելիս: 787 թվի ժողովը Տարասիոսի գործն էր և այս քաղաքականության հաղթանակն էր: Տարասիոս պատրիարքը մեռավ 806 թվի փետր[վարի] 25-ին: Նիկեփոր կայսրը, որ գոհ էր Տարասիոսի վարքագծից, խորհեց նրան հաջորդ ընտրել դարձյալ աշխարհական փորձառու անձերից: Հարմարագույնն էր նկատվում Նիկեփոր (8), որն, ինչպես հանգուցյալ Տարասիոս, կայսերական առաջին քարտուղարն էր *πρωτοσεκρήτης:* Նիկեփոր կայսրը զգալով, որ վանականությունը կարող էր ընդդիմանալ իր ընտրությանը, քաղաքագիտորեն նախապես դիմեց Թեոդորոսին՝ Ստուդիոսի վանահորը, և հարցրեց նրա կարծիքը պատրիարքական ընտրությունների վերաբերյալ: Թեոդորոս ջատագով էր եկեղեցու կատարյալ անկախության աշխարհական իշխանություններից: Նա վերակազմել էր վանական կյանքը և կարողացել էր ստեղծել վանականության մի ահավոր ուժ: Ստուդիոսի վանքը հաշվում էր մինչև 700 կրոնավոր (ըստ այլ տեղեկության՝ 1000): Թեոդորոսը այն միտքը հայտնեց, որ պատրիարքական աթոռին վայել ժառանգ ընտրելի է միշտ վանականներից, որը պետք է գոհացնի նրանց պահանջները: Նա պետք է լինի առաքինի, բարեսեր, իսկական եկեղեցական, որ անցել է աստիճանաբար եկեղեցական նվիրապետության ամբողջ սանդուխը: Ասել է, թե Թեոդորոս ընդդեմ էր Նիկեփորի ընտրության և ավելի ինքն իրեն էր առաջարկում: Նիկեփոր կայսրը Թեոդորոսին և վերջինս հորեղբայր [Սակկուդիոնի վանահայր] Պլատոնին 24 ժամով բանտարկեց, որպեսզի չխանգարեն Նիկեփորի ձեռնադրության, որ տեղի ունեցավ Զատիկին՝ ապրիլի 12-ին:

Խռովարար Թեոդորոսը գլուխ բարձրացրեց շուտով մի ուրիշ առիթով: Կոստանդին VI-ը բաժանվել էր իր կնոջից՝ [Մարիայից], և վերստին ամուսնացել Թեոդոտե անունով կնոջ հետ 795 թվին: Կոստանդինի անկումից հետո Իրենե դրդեց Տարասիոս պատրիարքին հայտարարելու, որ Կոստանդինի վերամուսնությունը ապօրինի էր, և Հովսեփ վանահայրը, որ կատարել էր պսակադրության կարգը, արժանի է պատժի: Տարասիոսի կենդանության խնդիրը մնաց առկախ, քանի որ ինքն ևս անմասն չէր ապօրինի համարված գործին: Հենց որ [Տարասիոս] մեռավ, հին հարցը վերստին երևան եկավ: Կարևորը, հարկավ, այն չէր, թե մեռած կայսրը տարիներ առաջ ի՞նչ ապօրինի գործ է կատարել: Սկզբունքային հարց էր, որ հրապարակ էր հանվում: Կայսրն իրավունք ունի՞ ոտնակոխ անելու եկեղեցական կանոնները: Ստուդիոսի վանական միաբանությունը պնդում էր, որ կանոնը վեր է, աստվածային օրենքը պարտավորեցուցիչ

բոլորի համար, և արքայական ծիրանին անգամ բացառություն չի կարող կազմել: Պետական իշխանության տեսակետն էր, որ կայսրը բարձր է, ինչպես աշխարհական, այնպես էլ եկեղեցական օրենսդրությունից: Խնդիրը քննվեց 809 թվի հունվարին գումարված աշխարհական և եկեղեցական պաշտոնյաներից գումարված խառն ժողովում, ուր պետական տեսակետը վեր առավ: Խռովարար վանականները, Թեոդորոս և Հովսեփ եղբայրները և իրենց հորեղբայր Պլատոնն աքսորվեցին, կայսրը Ստուդիոսի միաբանությունը ևս ցրեց:

Նիկեփոր կայսրը կրոնական նկատումով թվում է, թե անտարբեր էր, անկրոն ոմն էր, ո՛չ պատկերների դեմ էր և ո՛չ թեր, հաշտ աչքով էր նայում անգամ պավլիկյան և մյուս աղանդների վրա: Այս է պատճառը, որ նրան գաղտնի կապեր են վերագրում պավլիկյանների հետ, մանավանդ, աթինգանների[1] (9): Նիկեփոր սնած էր Պեսիդես, ուր բավականին զորեղ աղանդավոր համայնքներ կային: Լուր էր տարածված, որ Վարդանի (10) ապստամբության ժամանակ աղանդավորներն ի նպաստ Նիկեփորի **ցուլ են զոհել** (taurobole) և այլ հուռութներ գործել (Վարդանի շորերը ջրաղաց նետել): Թեոփանեսը նշում էր, թե Նիկողայոս անունով մի վանական «մեր առջև՝ անարգելով սրբապատկերները, սկսեց ազատ քարոզել պատկերապաշտության դեմ՝ բնակվելով քաղաքի դռան մոտ մի խցում, իսկ իշխանություններն անտարբեր էին»[2]: Նիկեփորին կրոնը հետաքրքրում էր պետականորեն, այսինքն՝ որքան որ այն կապ ուներ պետության հետ, [իսկ] անձնապես անտարբեր էր:

Նիկեփոր և իր հաջորդը՝ Միքայել [I] Ռանգաբե մնացին ընդհանուր առմամբ նույն տողի վրա, որ գծել էր Իրենե: Պատկերամարտությունը սակայն խեղդված չէր: Առիթ էր հարկավոր, որ նորեն առկայծեր մոլեռանդության գաղտնի հուրը: Միքայել [I-ի] անհաջող արշավանքը բուլղարների դեմ 812 թվին, առիթ տվավ պատկերամարտությանը հրապարակ ելնելուն:

---

[1] Athingani կոչված աղանդավորները պավլիկյաններին մոտ էին: Կարծում են, որ սրանց անունը ծագում է Պողոսի առ Կողոսացիս II, 21 Թղթի μηδὲ θίγῃς արտահայտությունից ἀθιγγάνειν այստեղից և ἀθίγγανος նոր հունարեն նշանակում է ցիգան, գնչու: Սակայն ավելի հեշտ կլիներ Zigeuner և ἀθίγγανος կապել իրանակ[ան] čingana-k-ի հետ՝ ճինանման մարդ (հայերեն գնչու, փոխանակ չնգու), հմմտ. kurd-mana, turk-man և այլն:

[2] **Theoph**, Nic., A.M., 6303. Այս Նիկողայոս թվում է այն համանուն անձն էր, որի մոտ հյուրընկալվեց՝ Նիկետաս Մենակյացը՝ Թեոդորա թագուհու ազգականը: Որովհետև Նիկողայոսի համար ասված էր προσγενής, նշանակում է նա ևս հայ էր:

787 թվի ժողովով պատկերապաշտության շուրջ հարուցված վեճերը և կրքերը չխաղաղվեցին: [Հաստատվեց] հոգնած ուժերի ժամանակավոր դադար: Նիկեփոր կայսրը միջին ճանապարհն էր ընտրել: Ընդունելով հանդերձ Նիկիո ժողովը, գտնում էր, որ հակառակորդները պարտավոր չեն բռնի պաշտելու պատկերները: [Նրանք] ունեին որոշ ազատություն, պայմանավ միայն, որ անարգանք չհասցնեն պատկերներին:

Լևոն [V] կայսրը ուրիշ քաղաքականության հետևեց: Անշուշտ, պատկերամարտներն ուժեղացել էին կամ ժամանակավոր դադարից հետո գլուխ էին բարձրացրել և այնքան ազդեցիկ էին, որ գահակալը ստիպված էր հետևելու նրանց:

Թշնամի մատենագիրները հավատացնել են ուզում, որ Նիկեփոր պատրիարքը գրավոր խոստումն է պահանջել ուղղափառության համար և, որ Լևոն [Հայկազնը] խոսք է տվել, բայց հետո դրժել (Incert., Sym.): Ուրիշներն էլ ասում են, որ կայսրը խոստացել է դա անել թագադրության ժամանակ[1] և վերջապես կան աղբյուրներ, որ [նշում են, թե] Նիկեփոր պատրիարքը «Հավատոյ Թուղթ» (*τόμος*) է պատրաստել և ներկայացրել Լևոն Հայկազնին: Սա (կայսրը) հավանել է, խոստանալով թագադրությունից հետո ստորագրել այն, սակայն թագադրության երկրորդ օրը մերժել է[2]:

Իրողություն է, որ Լևոն Հայկազնը միայնակ չէր, եթե անգամ ընդունենք, որ նա անձամբ պատկերապաշտության վրա մեծ համարում չուներ: Խավրյանների ժամանակ երկիրը բարգավաճ վիճակի մեջ էր՝ ներսը՝ թե պատերազմի դաշտում: Մինչդեռ, 787 թվից հետո գործերը զգալիորեն վատթարացել էին: Հասարակական կարծիքը, ամբոխային տրամադրությունն այստեղից որոշ եզրակացություններ էր հանել, թե երկինքը հաշտ աչքով էր նայում պատկերամարտության վրա: Հավատացնում էին, որ

---

[1] **Vita Theod.**, 665.

[2] **Ignatii**, Vita Niceph., Patr., 163. Լևոնը գահ բարձրացավ 10 հունիսի VII ինդիկտիոնի, տե՛ս Scr[iptor], Inc[ertus], 340. Նաև **Հովհան**., p. 349 υἱὸν Παγκράτιον τινὸς σκιαστοῦ ὅστις ἐκ παιδόθεν δαίμονα οἰκεῖν ἀτάκτως φερόμενος, διάνων ἐν ἀσυνεσίᾳ, ὅν τινα, Ὑλιλᾶν ἐπωνόμαζεν, ὡς τινές φασιν, ἑρμενευόμενον Ἑβραϊστὶ λέγεται πρόδρομος καὶ συνεργὸς τοῦ διαβόλου. Նույնը՝ p. 350, εὗρον Κωνσταντῖνον, υἱὸν πρεσβύτερου τινὸς τζαγγαρίου, καὶ Κασυματᾶ μαθόντα τὴν γραμματικὴν καὶ ἐπονομασθέντα Ἀντώνιον. Սկզբում վանահայր Μετροπολίτων կոչված վանքի, հետո եպիսկոպոս՝ Συλαῖον.

Լևոն Հայկազնը կամենալով նմանել Լևոն Իսավրացուն, ուստի Սմբատ որդու անունը փոխեց Կոստանդինի՝ հայտարարելով նրան Ավգուստոս՝ 813 թվի վերջը: Փիլոմելիոնի վանքի անապատականի գուշակությունն իրականացել էր: Լևոն Հայկազնը որպես թե մարդ է ղրկում շնորհակալություն հայտնելու, բայց նա արդեն մեռած էր և նրան հաջորդել էր մի ուրիշ՝ Symbatios (Սմբատ) (և ոչ Սաբբատիոս) անունով վանականը[1]:

Սա պատկերամարտ էր և Իրենե թագուհուն անվանում էր ընձուհի [յագուար] և բակքանդ՝ մոլեկան [տոփական], իսկ Տարասիոս պատրիարքին՝ Տարախիոս (Շփոթեցնող): Վանականը պատգամ տվավ, որ «Եթե Լևոնը չկործանի պատկերապաշտությունը, Աստված պիտի տապալե նրա գահը»: Լևոն Հայկազն կայսրը շփոթված այս մարգարեությունից խորհրդակցում է Թեոդոտոս Կասսիտեր(աս) ի հետ: Սա վճռական կարծիք չէ հայտնում և խորհուրդ է տալիս դիմել Անտոն անունով մի ուրիշ հայտնի վանականի, իսկ ինքը ծածուկ նախազգուշացնում է Անտոնին: Երբ կայսրը գիշերով ծպտյալ գալիս է սրա մոտ, վանականն[2] ասում է, որ եթե Իսավրացու հավատը վերականգնե, կթագավորե մինչև 72 տարեկանը[3]:

Լևոնի խորհրդատուներ էին, բացի Սմբատ և Անտոն ճգնավորներից, Հովհաննես Քերականը՝ իր ժամանակվա ամենակրթված անձնավորություններից մինը: Սրա փուք [կարճառոտ] անունն էր *Ὑλίλας* Hylilas կամ Hylzilas, երբայեցերեն որպես թե *πρόδρομος καὶ συνεργὸς τοῦ διαβόλου*. Սա էր որդի *Παγκρατίου τινὸς Σκιαστοῦ*[4] և պատկանում

---

[1] Այս վանականի պատասխանը խիստ էր. «Գնացե՛ք ասացեք, որ ես կռապաշտից նվեր չեմ ընդունում և որ ինքը շուտով մեռնելու է, քանի որ տառապում է, որ մարդիկ պաշտում են սնոտի իրեր»: Լևոն Հայկազնը գանգատվում է ոմն Վասիլի, որ էր պատկերամարտ: Սա խորհուրդ է տալիս դիմել ուրիշ ճգնավորի:

[2] Անտոնը մերկացնում է ծպտյալի անձը և ասում նրան. «Եթե գնաք Լևոն Իսավրացու ուղիով, կթագավորեք մինչև 72 տարեկան. ներսը՝ խաղաղություն և դուրսը՝ հաղթություն: Կլինեք 13-րդ Առաքյալը և Ձեր սերունդը գահ կնստի: Ապա թե ոչ՝ վաղահաս մահը Ձեր բաժինն է»:

[3] Լևոն III-ը (717-741) թագավորեց 33 տարի: Եթե վանականը ուզում էր ասել, թե Լևոն V-ի թագավորությունը ևս պիտի տևե այդքան, այսինքն՝ 33 տարի, ապա նրա թագավորությունը պիտի շարունակվեր մինչև 846 թիվը (813+33 = 846), երբ Լևոնը կլիներ 72 տարեկան: Ասել է, թե Լևոն Հայկազնը ծնված է 774 թվին (846-72=774): Այդ ժամանակ նրա հայրը՝ Վարդը, արդեն հրապարակի վրա էր: Հետևաբար, 813 թվին Լևոնը պետք է լիներ 39 տարեկան (813-774 = 39):

[4] **Cedr.**, II, 144.

էր *Μοροχαρζανίοι* (Morocharzanioi կամ Morocardanioi) նշանավոր ընտանիքի[1]: Եղբոր անունն էր Արշավիր[2]: Երիտասարդ տարիներից սքեմ էր հագել, վանահայր էր Կ. Պոլիս Ս. Սարգիս և Բաքոս վկաների մենաստանին, որ պալատական եկեղեցի էր և որի հոգևորականությունը մտնում էր կայսերական կղերի կազմի մեջ: Նրան Իաննիս (*Ἰάννης*) էին անվանում, ակնարկելով ոչ միայն փարավոնի մոգին[3] (11), այլև, լեկանոմանտեսին, որպես թե լականով (տաշտով) գուշակություններ էր անում (12): Մի օր եկեղեցում, երբ կարդում էին Եսայի մարգ[արեի] 40-րդ գլ[ուխը]՝ «Ինչ կերպ եք երևակայում Ամենակարողին: Արհեստավորի ձեռքը կարո՞ղ է նրան ներկայացնել ոսկու և արծաթի միջոցով», Հովհան[նեսը] մոտեցավ կայսեր և շշնջած նրա ականջին. «Լսում ե՞ս մարգարեի խոսքերը (13), ամենևին մի զղջա սկսածդ գործի համար»:

**Թեոդոտոս** Կասսիտերաս կոչեցյալը Մելիսսենոսների տնիցն էր: Սրա հայրը **Միքայել** Անատոլիկոն [բանակաթեմի] ստրատեգ էր Կոստանդին V Կոպրոնիմոսի ժամանակ և Եվդոկիայի քրոջ հետ էր ամուսնացած, որ կայսեր երրորդ կինն էր[4]: Սա Հովհաննեսի բարեկամն ու համախոհն էր, երկուսն էլ Լևոն կայսեր խորհրդականներից:

Երրորդ կարևոր դեմքն էր Կոստանդին Կասսիմատ՝ Պամփիլիայի Սյուլլայոն (Syllaion) բնակավայրից: Հայրը քահանա էր, բայց վատ բարքի համար կարգազուրկ է եղել և պարապում էր կոշկակարությամբ[5]: Կոստանդինը մեծ ընդունակություն ուներ, մանավանդ գրական ձիրքեր և նուրբ ճաշակ: Սկզբում ուսուցիչ էր քերականության, հետո՝ իրավագիտության: Վերջը հոգևոր կոչում ստացավ և Անտոն անունով վանահայր էր մի նշանավոր վանքի: Անտոնը ուրախ բնավորության տեր էր, սրամիտ և լավ զրուցող, զվարճախոս: Հակառակորդները [նրան] համարում էին սրախոս, բամբասող և բավականին ճկուն՝ անխտիր ուղիներով կյանքի մեջ առաջանալու համար: Իռենեի, Նիկեփորի և Միքայելի ժամանակ որպես թե պատկերապաշտ էր եղել, այժմ փոխելով իր գույնը պատկերամարտության սյուն է դառնում և Լևոն կայսեր թելադրողը: Մյուս համախոհներից հայտնի

---

[1] **Theoph**. Cont., 154.

[2] **Scriptor Incertus**, p. 350-359; **Sym. Mag.**, p. 606; **Leo Gramm.**, p. 208-209, 221; **Vita Theodori**, col. 172, 277.

[3] **Բ թուղթ առ Տիմոթէոս**, Գ, 8:

[4] Scriptor Incertus de Leone Armenio, p. 360. Եվ ոչ թե Եվդոկիա էր քույր Միքայելի, ինչպես պնդում է Lebeau, t. XIII, p. 15.

[5] Արդյո՞ք **կասսի**-մատ չի նշանակում կաշեգործ:

էին Հովհաննես Սպեկտաս (Spectas) և ծերակուտական Եվտիքիանոս, այլև երկու վանականներ՝ Լեոնտիոս և Զոսիմաս[1]:

814 թվի Հոգեգալստյան օրը Հովհաննես Քերականը հիշված անձերի հետ[2] ձեռնամուխ է լինում նյութեր մթերել 787 թվի ժողովի դեմ: Կայսեր բարեհաճ ցանկությամբ բոլոր գրադարանները դրված էին նրանց տրամադրության տակ: Գլխավոր աղբյուրն ի վերջո **753 թվի** ժողովի արձանագրություններն ու գործերն էին, որ ամբարված էին հին գրքերից և Ս. հայրերի [գործերից] քաղված վկայություններ՝ ընդդեմ պատկերապաշտության:

Նախապատրաստական գումարումները [խորհրդակցությունները] կայանում էին արքունիքում, ուր առանձին բնակարան էր հատկացված խորհրդական անդամներին: Հակառակորդներն ավելորդ չէին համարել հիշել, որ խորհրդական անդամները կերակուր էին ստանում արքայական ճոխ սեղանից և իրենց մարմինը պարարտացնում էին, որպես խոզեր[3]:

Սկզբնական խորհրդակցությունները կատարվում էին գաղտնի, և երբ հարցնող էր լինում, թե ինչով են զբաղված արքունիքում, պատասխանում էին, թե «կայսրը հանձնարարել է ստուգել հին գրքերի մեջ, արդյո՞ք որքան ճիշտ է, որ ինքը շուտով մեռնելու է և այս է մեր որոնումների նյութը»[4]:

Գաղտնի հանձնաժողովն իր զբաղմունքներն ավարտելուց (մինչև դեկտեմբեր) հետո կայսրը իր մոտ է կանչում պատրիարքին և աշխատում տնտղել նրա տրամադրությունը: Նա ասում է պատրիարքին. «Ժողովուրդը գայթակղություն է համարում պատկերը և սրա պատճառով է, որ երկինքը որպես պատիժ այդքան հաջողություն տվավ թշնամիներին պատերազմի դաշտում ընդդեմ մեր պետության՝ նախընթաց կայսրերի օրով: Պետք է լքել այս պաշտամունքը, որ էական չէ կրոնական տեսակետից և ոչ էլ կարելի է արդարացնում գտնել Ս. Գրքի մեջ: **Ես աստվածաբան չեմ, ես կայսր եմ** և իմ պարտքն է հաշտեցնել մտքերը, այլապես պառակտումը կարող է մեծ խռովություն հարուցանել պետության մեջ: Թողե՛ք բռնենք հաշտարար ուղին և ի հաճույս զորքի, վտարենք պատկերները»: Նիկեփոր պատրիարքը համոզվելով, որ ամեն մի զիջում նշանակ է պատկերամարտության, հակառակում է կայսրին, ասելով, որ պատկերի պաշտամունքը հինավուրց ավանդ է, հին՝ Ս. Գրքի չափ, նույնչափ էլ հիմն է ուղղափառ հավատի, և որ

---

[1] **Vita Nicetas**, XXIX.

[2] Հովհաննես Քերականն ու մյուսները ծածուկ պայմաններում սկսեցին աշխատել Հոգեգալուստից սկսած, իսկ Անտոնը՝ հուլիս ամսից մինչև դեկտեմբեր:

[3] **Ignatii**, Vita Niceph. Patr., 165.

[4] **Epist. Synod.** Orient ad Theoph., 373. **Migne**, t. 95, 345.

խաչի ու Ավետարանի մեծարումը ևս նախատեսված չէ Ս. Գրքի մեջ, սակայն ընդունելի է նույնիսկ պատկերամարտների կողմից: Կայսրն առաջարկեց պատրիարքին խորհրդակցել, առանձին ժողով գումարելով Հովհաննես Քերականին և նրան համամիտ գիտուն եկեղեցականների հետ և համաձայնության գալ: Սակայն համառ պատրիարքը մերժեց, առաջարկելով, որ խնդիրն արդեն պարզված է 787 թվի Նիկիո ժողովում և, որ նոր ժողովի կարիք չկա[1]:

Կայսրը զայրացած գոչեց. «Կորե՛ք այստեղից, կույր և անհնազանդ հոտ, որ մերժում եք ընդունել լույսը, որ տրվում է Ձեզ: Ես գիտեմ, ինչպես հնազանդեցնել Ձեզ»: Լևոնը թեև կարճահասակ էր, բայց այնպիսի մի ձայն ուներ, կարծես որոտ էր, և դեմքը, որքան բարեձև և ներդաշնակ գծեր ուներ, բարկության պահին կրում էր վայրագ և սարսափելի արտահայտություն:

Պատրիարքը հուզված հեռանում է և գիտենալով, որ պատկերամարտների գլուխ է կանգնած Սյուլլայոնի եպիսկոպոս Անտոնը, վերջինիս կանչում է իր մոտ, կամենալով ստուգել նրա դիրքը: Անտոնը հավատացնում է, որ ինքը պատկերահարգ է և հակառակ պատկերամարտների: Կայսրը լսելով Անտոնի վարմունքը կանչում և հանդիմանում է նրան՝ երկդիմության համար: «Տեր, - արդարանում է եպիսկոպոսը, - խոսք կարող եմ տալ միայն իմ կայսեր, մնացածը խաղ է: Ես ասացի նրանց այն, ինչ որ նրանք ուզում էին լսել, որպեսզի Ձեզ դյուրություն տամ անելու այն, ինչ որ վճռել եք»:

Մինչ այս, մինչ այն, մայրաքաղաքի պահազնդերից (tagwate) զինվորներն ազատություն էին տվել իրենց զգացումներին և անարգել Հիսուս Քրիստոսի պատկերը, որ դրված էր պալատի դռներից մեկի վերև, այն որ կոչվում էր Պղնձե դուռն: Պատկերի արձանագրություն ասում էր, որ խաչը կոտրել էին Լևոն Իսավրացու ժամանակ և վերանորոգել էր Իրենե: Չար լեզուներն ասում էին, որ այս քայլի գաղտնի ներշնչողն ինքն՝ կայսրն էր, որ կեղծորեն դուրս է գալիս և առաջարկում վերցնել խաչը, որպես թե ազատ պահելու անարգանքից:

Զինվորների ցույցերից հետո պատրիարքը գումարում է եպիսկոպոսների և վանականների ժողով, ուր երդվում են մնալ անհողդողդ Է-րդ ժողովի վճռի վրա: Այնուհետև պատրիարքը հայտնեց կայսրին, որ ինքը պատրաստ է թողնել աթոռը, եթե հաճելի չէ իր անձը, միայն թե եկեղեցին չխռովել նորամուծությամբ: Զինվորների ցույցը և պատրիարքի տեսակցությունը կայսեր հետ եղել է 814 թվի դեկտեմբերին՝ Ծննդյան տոների նախօրյակին[2]: Կայսրը չընդունեց պատրիարքի հրաժարականը,

---

[1] **Scriptor Incertus,** p. 352.

[2] Նույնը, էջ 355:

որպես թե Ծննդյան տոն էր և երկյուղ էր կրում, թե հանդիսության ժամանակ պատրիարքը կարող էր եկեղեցի չընդունել պատկերամարտ կայսեր: Այս տոնին կայսրը մեծ հանդեսով մտնում է եկեղեցի հագած ամենաթանկագին զգեստներ, բոլորած եպիսկոպոսների և աշխարհականների մեծ շարքերով: Կայսրը մոտեցավ սեղանին և համբուրեց սփռոցը (ծածկույթը), որի վրա ասեղնագործված էր Հիսուս Քրիստոսի ծնունդը պատկերող նկարը:

Սակայն կայսրը 815 թվականի Հայտնության օրից փոխեց իր վերաբերումը և ցույց չտվավ սպասելի հարգանքը պատկերներին: Միևնույն ժամանակ կայսրը պատրաստվում էր գումարելու ժողով և վերաքննել խնդիրն ի նպաստ յուր: Ամեն կողմից քաղաք էին թափվում պատկերամարտ վանականներ՝ Միկենայից, Եվբեայից, Կորնթոսից և այլ տեղերից: Քաղաք ժամանելուն սրանք առաջնորդվում էին դեպի կայսերական պալատը, նախքան պատրիարքին ներկայանալը, որպեսզի չենթարկվեն պատրիարքարանի ազդեցության:

Պատրիարքն իր կողմից պատրաստություններ էր տեսնում և զորեղացնում իր կուսակիցների թիվը: Հիշելու է մասնավորապես Ստուդիոսի վանահայր Թեոդորոսը, որ տարիներ առաջ Նիկեփորի հակառակորդն էր և այժմ միացել էին ընդդեմ ընդհանուր թշնամու: Պատրիարքի կուսակիցները ժողով են գումարում Ս. Սոփիա Մայր տաճարում և ամբողջ գիշերը հսկման մեջ անցնում: Կայսրին հաճելի չէր, ինչ որ կատարվում էր Ս. Սոփիայում: Ուստի հրամայեց, որ վաղ առավոտյան պատրիարքն իրեն ներկայանա և բացատրություն տա իր վարմունքի մասին: Տեսակցությունն այս անգամ փոխվեց իսկական վիճաբանության պատկերների հարցի շուրջը: Պատրիարքը խնդրեց թույլատրություն՝ ներկայացնելու իր հետ համամիտ հոգևորականությանը, որ նրանցից լսե վիճելի խնդրի ամբողջ փաստաբանությունը: Երբ ժողովեցին, կայսրը սկսեց խոսել. «Ի նկատի ունենալով, որ կասկածներ են հարուցել պատկերապաշտության շուրջը, և Ս. Գրքի վկայությունները ևս նպաստավոր չեն ընդունված սովորության, անհրաժեշտ է միանգամ ընդմիշտ պարզել, լուծել խնդիրը, որպեսզի հնարավոր լինի մեզ համար այսուհետև կատարել մեր մեծ պարտքը, որ է պահել եկեղեցու միությունը»[1]: Եպիսկոպոսներից ոմանք պատրաստ էին համակերպվել, ուրիշները տեսնելով պատրիարքի տոկունությունը, առ ոչինչ էին համարում կայսեր սպառնալիքները և համարձակ ընդդիմախոսեցին: Ստուդիոսի Թեոդորոսին է վերագրվում այն խոսքը, թե կայսրը իրավունք չունի միջամտելու եկեղեցական գործերի մեջ: «Թողե՛ք եկեղեցին իր հովիվներին և ուսուցիչներին. հոգացե՛ք Ձեր սեփական անելիքի մասին, որ

[1] **Ignatii**, Vita Niceph. Patr., 168.

է պետություն և զորք: Եթե հակառակ վարվեք և ջանաք քակել մեր հավատը. գիտցեք, որ հրեշտակն անգամ, եթե գա երկնից մեզ շրջելու, չպիտի հնազանդվենք»[1]:

Կայսրը արձակեց բոլորին, նկատելով, որ նպատակ չունի մարտիրոսներ շինել նրանցից կամ որևէ պատիժ տալ, մինչև որ խնդիրը չքննվի[2]: Պատրիարքը և ընդհանրապես պատկերապաշտները հանգիստ չէին նստած, այլ ամեն կերպ աշխատում էին ամբոխին գրգռել, ցույցեր անել: Ս. Սոփիայի ժողովը և կամ հսկումը անհանդուրժելի էր, ուստի կայսերական հրամանով արգելվում է անջատ և առանձին հավաքույթները պատրիարքարանում, իսկ Թովմաս պատրիկին հանձնարարվում է հսկել պատրիարքի վրա: Պատրիարքը մասնավոր նամակներ է գրում կայսեր մոտ անձանց, հուսալով ազդել կայսեր վրա: Գրեց նաև Թեոդոսիա թագուհուն, հորդորելով կասեցնել ամուսնուն աիավոր ձեռնարկից: Գրեց ընդհանուր լոգոթետին և [ծերակուտական] Եվտիքիանոսին, որ առաջին սեկրետարն էր [ասեկրետար]:

Պատրիարքը, որ այդ այդ ժամանակ կայսեր հրամանով արդեն հեռացված էր իր պաշտոնից[3], հիվանդացավ: Շատերը կարծում էին, որ պատրիարքի մահվամբ դժվարությունները կհարթվեն բնականորեն: Մտածում էին հաջորդի մասին: Հովհաննես Քերականի հավակնությանը խոչընդոտ էր իր [երիտասարդ] հասակը և ծագումը[4]:

Թեոդոտոս Կասսիտերաս, որ Լևոնի աջ բազուկն էր, հարմարագույն անձ էր պատրիարքության աթոռի: Նա Մելիսսենոսների տնից էր և հայրը՝ Միքայել, պատրիկ և ստրատեգ Անատոլիկոն բանակաթեմի, պատկերամարտ էր Կոստանդին V-ի օրով:

Սակայն պատրիարքը ողջանում է: Արդեն ոտի վրա էր, երբ սինոդը վերջացրեց իր գործերը: Նախ՝ թագուհու եղբայրը՝ **Թեոփանես**, հետո՝ առաջին պատվիրակության մի քանի հոգևոր անձերից, ուղարկվեցին պատրիարքի մոտ:

Առանց Թովմաս պատրիկի միջնորդության և խորհրդի պատրիարքը պիտի մերժեր ընդունել պատվիրակությանը: Երբ քաղաքում իմացվեց այս

---

[1] **Vita Nicetas,** 30. A.S. april 3, t. I ad ede XXII; **Georg. Mon.,** 477; **Vita Theod. Stud**. (=Migne, t. 99, 233) 240. Տես նաև «Vita S. Theodoris Studitae», "Византийский Временник", т. XII, 1914, стр. 282.

[2] **Vita Theod.** Stud., 281. Միքայելը վատաբանեց Լևոնին, ինչիջայլոց αὐτοῦ ἐς τὴν γαμετὴν ἀνοσίους γάμους ἐγκαθυβρίσαι - eiusque uxoris incertarum nuptiarum dedecus proferret.

[3] **Vita Nic.,** 190.

[4] **Scriptor Incertus,** p. 359.

այցելության մասին, ստվար ամբոխով շրջապատեցին պատրիարքարանը, մեծ մասամբ զինվորներ էին: Աղետը անխուսափելի էր, եթե նույն Թովմաս պատրիկը չփակեր դռները և չցրեր ցուցարարներին:

Պատվիրակության նպատակն էր համոզել պատրիարքին, որ ընդունի նոր եկեղեցական քաղաքականությունը, սպառնալով, որ հակառակ դեպքում գահընկեց կլինի: Ժողովն այնուհետև վճռեց հեռացնել Նիկեփորին պատրիարքական աթոռից: Թշնամի գրողները հավաստացնում են, որ Լևոն կայսրն ուզում էր վերջ տալ պատրիարքի կյանքին: Սակայն անհավանական է և լոկ զրպարտություն: Լևոնը բավականին իրատես և գործնական անձնավորություն էր[1] և գիտեր, որ այսպիսի աննպատակ միջոցով միայն կզորացներ ընդդիմադրությունը: Ստույգն այն է, որ որոշված էր պատրիարքին մեկուսացնել: Նրան հեռացրին նախ Ագաթոս վանքը՝ Բոսփորի ափին, հետո Ս. Թեոդոր վկայի վանքը՝ նույն Բոսփորի ասիական եզերքում և ավելի հեռու մայրաքաղաքից: Պատրիարքին ուղեկցողը [կայսրի] կրտսեր ազգականն էր (եղբորորդին) Վարդ-աս: Պատմում են, որ նավում պահակ զինվորները պատրիարքին չթողեցին նստել, երբ Վարդը նստած էր: Վշտացած պատրիարքը դարձավ Վարդին, թե «Սովորի՛ր ուրիշի դժբախտությունից՝ սեփական դժբախտությունը լավ տանելու համար»: Իսկապես, հետագայում Վարդը կրում է իր պատիժը: Թեոդորոս Ստուդիտեսը նրան պատահեց Սմիռնիա (Զմյուռնիա), ուր էր Վարդ որպես ստրատեգ Թրակեսյան բանակաթեմի: Վարդը ծանր հիվանդացավ, և ոմանք խորհուրդ տվին դիմել Թեոդորոսին, որ աքսորված էր այնտեղ: Թեոդորոս ասաց, որ կառողջանա, եթե հրաժարվի Լևոն կայսրի՝ իր հորեղբոր, աղանդից: Վարդը կատարեց և ապաքինվեց: Բայց քիչ ավելի ուշ զղջաց և նորեն դարձավ հին մոլորության: Սակայն շուտով մեռավ այս ուրացության պատճառով[2]:

815 թ. Զատկին (= 1 ապրիլի) Թեոդոտոս Կասսիտերաս կտրեց մազը և բարձրացավ պատրիարքական գահը: Թշնամիներն անգամ խոստովանում են, որ Թեոդոտոսը անուշ բնավորության տեր էր, բարեսիրտ ոմն և զուրկ չէր առաքինությունից, թեև բարեպաշտ չէր համարվում: Այսպես են անվանում բոլոր պատկերամարտներին նրանց հակառակորդ մատենագիրները: Թեոդոտոս պատրիարքի համար ուրիշ թերություն չէին գտնում, քան այն, որ ճոխ սեղան էր պատրաստում և հրավիրում եպիսկոպոսներին և վանականներին, ուր համադամ կերակուրների հետ աշխարհային զրույցներ էին անում և կատակներ, զվարճաբանում էին՝ անվայել հոգևոր կոչման:

---

[1] **Georg. Mon.**, p. 769-770; **Sym. Mag.**, p. 603.

[2] **Vita Theodori,** Migne, t. 99, 233; **Vita Nicolai Stud.,** Migne, t. 105, 863.

Թեոդոտոս նախագահեց [815 թվի] պատկերամարտ ժողովին, որի նախապատրաստությունները արդեն տեսնված էին: Ժողովի արձանագրությունները ոչնչացրին 843 թվի [պատկերապաշտ] ժողովի որոշմամբ, և եթե մի բան մնացել է, ապա այդ մնացել է հակառակորդների գրվածքներում[1]:

Սինոդի որոշագիրը էական մասում հայտնում է, որ «Կոստանդին V և Լևոն IV կայսրերը ժողով էին գումարել եկեղեցու ականավոր հայրերի մասնակցությամբ և ավանդորեն անօգուտ մնացած գործողություններով նզովել պատկերապաշտությունը:

Եկեղեցին այնուհետև խաղաղ մնաց բավականին տարիներ, և ժողովուրդը անդորրություն վայելեց, մինչև որ կառավարության ղեկն անցավ մի կնոջ, որ ամեն ինչ վրդովեց կանացի պարզամտությամբ: Հիմնվելով անգետ կրոնավորների թելադրանքի վրա՝ նա մի անկարող ժողով գումարեց և նորեն հրապարակ հանեց մոլար ուսմունքը՝ նյութականի միջոցով պատկերացնել Բան Աստծուն և Որդուն, Աստվածամորը և սրբերին ներկայացնել մեռած գծերով և պարտադրել, որ այդ նկարները պետք է պաշտվեն, արհամարհելով եկեղեցու ճշմարիտ վարդապետությունը: Պղծելով մեր **latreia** աստվածապաշտությունը, հայտարարեցին, որ անկենդան պատկերներին պետք է տալ այն, ինչ որ մատուցանելի է միայն Աստծուն: Անմտաբար ասում էին, որ պատկերները օժտված են (լի են) աստվածային շնորհով և ներելի էին համարում ճրագներ վառել և խունկ ծխել նրանց առջև: Արդ, մենք վանում ենք այսուհետև ընդհանրական եկեղեցուց պատկերագործությունը, հերքում ենք Տարասիոս պատրիարքի սահմանած երկրպագությունը, ոչնչացնում ենք Սինոդի վճիռը այն հիմամբ, որ նա տալիս է պատկերներին անպատկան պատիվը, և դատապարտում ենք (նզովում) ճրագավառությունը և խնկարկումը նրանց առաջ»:

---

[1] 815 թվի ժողովի վճռագիրը բերված է Նիկեփոր պատրիարքի մի գործում՝ ἔλεγχος καὶ ἀνατροπὴ τοῦ ἀθέσμου... ὅρου, Acta concilii A.D. 815 (Les actes du concile iconoclaste de l'an 815, ed. D. Serruys Mélanges d'archéologie et d'histoire (E'cole francaise de Rome), XXIII, Paris-Rome, 1908. Մի մասը և վերնագիրը բերված են **Hefele-Leclercq,** Histoire des conciles, III, 2, p. 1217. Մյուս աղբյուրներն են՝ **Theodorus Studita,** Epistola, II, 1, **Migne,** t. 99; **Vita Theodori** (Michael Studita, Migne, t. 99, 223). II ep. ad Lud. **Vita Nicetae,** XXX (Theosterictus, A.S. april 3, t. 1 ad coll. XXII sqq.=Mansi, t. XIV, 135 sqq. 417, Scr. Inc., 360-361).

815 թվի Սինոդից հետո հակառակորդ վանականները հանձնվեցին Հովհաննես Քերականին՝ խելքի բերելու: Ընդդիմադիրներից շատերն աքսորվեցին հետևյալ տարվա գարնանը, Զատիկից հետո (816 թվի Զատիկն ընկնում էր ապրիլի 20-ին): Ոմանք հնազանդվեցին, ուրիշները մնացին հաստատ իրենց համառության վրա և աքսոր գնացին: Լևոն կայսեր ձեռնարկած հալածանքները ինձ թվում է չափազանցված և հեռու իրականությունից: Ստույգ է, որ **Թեոդորոս** Ստուդիտես, որ Կոստանդին VI-ի օրոք ենթարկվել էր հալածանքի, այս անգամ ևս աքսորվեց ոմն **Նիկողայոսի** հետ, որ Ստուդիոն վանքի եղբայրակիցներից էր:

**Թեոփանես** Ժամանակագիրը, որ ներկա չէր 815 թվի ժողովին, ևս հանձնվում է Հովհաննես Քերականին, որը սրան փակում է մի արգելարանում և վերջը աքսորում Սամոթրակե, ուր և մեռնում է 818 թվի մարտի 12-ին:

Մյուս աքսորականներից հայտնի են՝ **Եվփիմիոս** Սարդացի[1]:

**Գևորգ**, եպիսկոպոս Միտիլենի [կղզու]՝ աքսորված Խերսոն և փոխարեն նշանակվեց Լևոն՝ ոմն պատկերամարտ[2]:

**Սիմեոն** Լեսբոսցի, որ սյունակյաց էր Մոլոս քաղաքում:

**Թեոփիլակտոս** Նիկոմեդիացի, որ իբր թե ծեծված էր կայսեր ներկայությամբ և աքսորված Կիբիսիոտ թեմը[3]:

**Միքայել**, Երուսաղեմի սինկելլոս 811 թվից, իր բարեկամ **Հոր** և երկու պաղեստինցի եղբայրք՝ **Թեոդորոս** և **Թեոփանես:** Այս երկուսը փախել էին Միքայել I-ի օրով Պաղեստինից՝ մուսուլմանների հալածանքներից, մոտ 812 թվին և եկել Կ. Պոլիս, ուր հյուրընկալվել են Խորա վանքում:

**Մակար**, վանահայր, Pelekêtê վանքի՝ Եփեսոսի մոտ:

**Հովհաննես**, վանահայր Katharoi վանքի[4]:

**Հիլարիոն**, վանահայր Դալմատոս (Dalmatoi) վանքի: Սովամահ եղև Թեոդոտոս պատրիարքի օրով[5]:

**Եմելիան**, եպիսկոպոս Կյուզիկոսի:

**Եվդոքս** Ամորրացի:

**Միքայել**, եպիսկոպոս Սիննադայի:

**Հովհաննես**, վանահայր Psicha վանքի:

Ընդամենը՝ 18 հոգի:

---

1 **Acta Davidis**, 229.

2 Նույնը, 227: Հմմտ. «Analecta Bollandiana», XVIII, 209, 399. 1899, ed. Delchaye.

3 **Х. М. Лопарев**, "Византийский Временник", IV, 355.

4 **Acta Sanctorum,** ապրիլ 27, III, 496.

5 **Acta Sanctorum, հունիս** 6, I, 759.

### 3. ՄԻՔԱՅԵԼ II ԹԼՎԱՏԻ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Միքայել կայսեր (820-829) անձնական համոզումը հակապատկերական էր: Սակայն, հանուն խաղաղության, նա կողմնակից չէր խիստ քաղաքականության և բռնության: Ամեն ոք կարող էր վարվել, ինչպես ուզում է, միայն առանց փորձելու ոտնձգելու պետական օրենսդրությունը՝ հիմնված 815 թվի ժողովի վրա:

Միքայել Թլվատ երկյուղ կրելով պատկերապաշտների ընդդիմությունից, ընտրեց մեղմ ու հաշտ ուղին: Նա ազատություն շնորհեց աքսորված և հալածված պատկերապաշտներին: Սրանք, և ամենից առաջ Թեոդորոս Ստուդիտեսը, շնորհավորելով Միքայելի գահակալությունը, հորդորում էին նրան վերականգնել պատկերապաշտությունը և հետ դարձնել գահընկեց Նիկեփոր պատրիարքին: Վերջինս ևս դիմեց կայսեր նույն հորդորով: Կայսրի պատասխանը շատ որոշ էր. «Մեր նախորդներն իրենք են պատասխանատու Աստծո առաջ՝ դավանած վարդապետության համար: Մեր պարտքն է պահել եկեղեցին այնպես, ինչպես ավանդված է մեզ: Ոչ ոք չպետք է համարձակվի բերան բանալ պատկերներին՝ թերի կամ դեմ: Կատարյալ լռություն հարցի շուրջը, ահա այսօրվա նշանաբանը: Պատրիարքն էլ կարող է վերազրավել աթոռը, եթե հոժար է այս քաղաքականությամբ ընթանալ»: Կայսրն առաջարկում էր նաև, որպեսզի երկու կողմերը խորհրդակցեն և գան ընդհանուր համաձայնության: Ինչպես և պատրիարքին խնդրեց խոսել իր կուսակիցների ու բարեկամների հետ և որդեգրել կայսեր պաշտպանած գիծը: Պատկերապաշտները բացեիբաց հրաժարվեցին հերետիկոսների հետ բանակցելուց: Թեոդորոս չքաշվեց ասելու նաև, որ ամեն բանով հնազանդ են կայսեր, բայց եկեղեցական գործերում չեն կարող ենթարկվել կայսերական բարձրագույն հրամաններին, և որ վեճի միակ հեղինակավոր ատյանը Հռոմի պապն է՝ բոլոր եկեղեցիների պետը: Թեոդորոս անձամբ ներկայացավ կայսեր, ինչպես և Նիկեփոր պատրիարքը, և նույնը կրկնեց: Կայսրը ևս մնաց իր տեսակետին անհողդողդ, կրկնելով, որ եկեղեցին մնալու է այնպես, ինչպես հասել է իրեն, և ով ուզում է պաշտել պատկերները, կարող է պաշտել, սակայն քաղաքից դուրս:

Այս խոսակցությունները տեղի են ունեցել հավանաբար Թեոդորոս Ա պատրիարքի (815-821) մահից հետո և նպատակ են ունեցել Նիկեփորին կոչելու պատրիարքական գահը գրավելու: Սակայն դրանք արդյունքի չհանգան: Պատրիարք ընտրվեց Անտոն(իոս) Կասսիմատ՝ Սյուլլայոնի եպիսկոպոսը, Լևոն V-ի հայտնի պատկերամարտ գործակիցը: Թեոդորոս

Ստուդիտեսի և իր կողմնակիցների քաղաքականության մեջ մի կետ կար, որ չէր կարող հաճելի լինել կայսերական իշխանությանը: Նրանք պնդում էին, որ եկեղեցական խնդիրներում գերիշխանությունը պատկանում է Հռոմի գահին: Այս հայացքը ընդդեմ էր պետական հիմնական օրենքին, որի տրամադրությամբ կայսրն էր համարվում գերագույն պետը ոչ միայն աշխարհային, այլև եկեղեցական գործերում: Միքայել II կայսրին բնավ հաճելի չէր, որ Թեոդորոս Ստուդիտեսը լավ հարաբերությունների մեջ էր Հռոմի հետ և աշխատում էր ի նպաստ պապի միջամտության պետական խնդիրներում: Դժգոհությունը զայրույթի փոխվեց, երբ կայսրի մոտ եկավ Եվգինեոս Բ պապի կողմից պատվիրակություն, որի գլուխ էր Մեթոդիոս եպիսկոպոս, որ հետագայում պատրիարք եղավ: Լևոն V-ի օրով նա ապաստանել էր պապի մոտ և այժմ գալիս էր պապի դավանաբանական Թղթով հօգուտ պատկերապաշտության: Անհանդուրժելի էր, որ կայսրի հպատակը արտաքին ուժի հենված խարդավանեը կայսերական իշխանության դեմ: Կայսեր հրամանով Մեթոդիոս կալանավորվեց և աքսոր ղրկվեց:

Այնուհետև վրա հասան ներքին խռովությունները Թովմասի ապստամբության պատճառով: Թեև ապստամբությունը աշխատեց իր կողմը քաշել դժգոհ պատկերապաշտների բանակը՝ հայտարարելով իրեն կողմնակից նրանց դավանության, բայց մեծ հաջողություն չունեցավ: Խաղաղությունը վերականգնելուց հետո Միքայել II-ը մի անգամ ևս փորձեց գլուխ բերել եկեղեցու միությունը, առաջարկելով նորեն հակառակորդներին համաձայնության գալու ժողովով: Պատկերապաշտների կարծիքով, պետք էր հրավիրել տիեզերական ժողով՝ չորս պատրիարքների (14) և պապի մասնակցությամբ: Այդպիսի ժողովը միայն կարող էր իրավասու և հեղինակավոր համարվել, կամ եթե գերադասում են տիեզերական ժողով գումարել, անհրաժեշտ պայման պիտի լինի նախապես վերահաստատել Նիկեփորին իր գահի վրա[1]: Այս բանակցությունը 824 թվին էր:

Միքայել II տեսավ, որ պատկերապաշտներն անդրդվելի են, անշուշտ, ապավեն ունենալով պապի անունը: Որպեսզի պապին իր կողմը ձգե, Միքայել Թուղթ գրեց ֆրանկների կայսր Լյուդովիկոս Բարեպաշտին, ուր բացատրեց գործի էությունը: Թուղթը խիստ կարևոր վավերագիր է: Այստեղ շեշտված են պատկերապաշտության ծայրահեղությունները, որ «Պատկեպապաշտները լույս են վառում պատկերների առաջ և խունկ ծխում և միևնույն հարգանքի են մատուցանում, ինչ որ կենարար խաչին: Նրանք աղոթում են և ուխտ անում: Շատերը սովորություն ունեն անգամ պատկերը

[1] **Theodorus Studita**, Epistola, II, 129.

շուրքով» ծածկել և կնքահայր դարձնել իրենց երեխաներին: Կան քահանաներ, որ պատկերներից ներկը հանում են և խառնում հաղորդության հետ (հացի և գինու) և տալիս հավատացյալներին (15): Ուրիշները տիրոջ մարմինը դնում են պատկերների ձեռքը՝ հավատացյալներին ուտեցնելու համար: Լևոն V կայսրը ժողով գումարեց և արգելեց այսպիսի գործողությունները: Այլև կարգադրեց, որ եկեղեցիներում ցած կախված պատկերները վերցնեն և թողնեն միայն բարձր կախվածները ի խրատ և յուսումն այն անձանց, որ գիր և կարդալ չգիտեն: Պայմանով, որ հավատացյալները մոմ չպիտի վառեն և ոչ խնկարկեն պատկերների առջև: Մի քանի անձինք չընդունեցին ժողովը և փախան Հռոմ, ուր և նրանք զբաղված են ժողովի զրպարտությամբ»: Միքայել II կայսրը խնդրում է Լյուդովիկոսից ընդունել իր պատվիրակներին, որ հանձնարարական Թղթով գնան պապի մոտ, և նպաստել նրանց ուղևորության[1]:

Լյուդովիկոս Բարեպաշտը ծայրահեղության համակիր չէր, ո՛չ պատկերամարտները և ո՛չ էլ Նիկիո ժողովի (787 թ.), թեև հաստատված պապի կողմից: Կողմնակից էր միջին ճանապարհի, ինչպես որ գծված էր 794 թվի Ֆրանկֆուրտի ժողովում: Այս ժողովն ընդդեմ էր պատկերների պաշտամունքին, բայց ներելի էր համարում դրանք եկեղեցիներում կախել որպես զարդարանք և կամ կրթիչք: Լյուդովիկոսը պարտք համարեց առնել պապի հաճությունը և գումարել մի նոր ժողով՝ վերստին քննության առնելու խնդիրը: Ժողովը տեղի ունեցավ 825 թ. նոյեմբ[երին] Պարիս, որն արտահայտվեց 794 թվի ժողովի իմաստով, այն է՝ դատապարտեց 787 թվի ժողովը, մյուս կողմից օրինավոր չգտավ պատկերամարտների ցանկությունը՝ վանել պատկերները եկեղեցուց[2]:

Թեոփիլոս կայսրը (829-842), որ Ավգուստոս էր հայտարարված հոր՝ Միքայելի, առաջին տարին (821 թ.) մասնակից էր թերևս հոր քաղաքականության և նրա մահից հետո շարունակեց հավատարիմ մնալ նույն քաղաքականության: Սակայն 834 թվից նկատվում է որոշ խստություններ մոլեռանդ պատկերապաշտների հանդեպ: Կարծում են, որ մասամբ նոր պատրիարքի՝ հոչակավոր Հովհաննես Քերականի կամ Հյուլիլասի ազդեցությունն էր, որ զգալի էր դառնում: Նա (Հովհաննես Քերականը) [պատրիարքական] գահ բարձրացավ 832 թվին:

Ժամանակակից մատենագիրները, անտարակույս, չափազանցնում են Թեոփիլոսի հարուցած հալածանքը: Մանավանդ, որ փաստեր չեն հիշում,

---

[1] **Mansi**, t. XIV, 417-422.

[2] **B. Simson,** Jahrbücher des frankischen Reichs unter Ludwig dem Frommer, 2 vol (814-840), Leipzig, 1874-1876.

այլ բավականանում են միայն ընդհանուր խոսքերով: Միակ օրինակը, որ բերում են պաղեստինցի երկու եղբայրների՝ Թեոդորոսի և Թեոփանեսի, դեպքն է: Նրանք իրենց եռանդը ցույց էին տվել տակավին Լևոն V Հայկազնի օրով, ուստի և աքսորվել էին մայրաքաղաքից: Լևոն V-ի մահից հետո նորեն գալիս են մայրաքաղաք և սկսում իրենց քարոզն ի նպաստ պատկերների: Միքայել II-ը ևս սրանց արտաքսում է մայրաքաղաքից: Թեոփիլոս կայսեր օրով վերստին երևում են և սկսում աղմկել: Կայսրն աշխատում է սրանց խելքի բերել, բայց չի կարողանում կոտրել մոլեռանդ վանականների համառությունը: Թեոդորոս Ստուդիտեսի դափնիները հանգիստ չէին տալիս այս օտարական կրոնավորներին: Ծանր պատիժ էր վիճակված նրանց: Կայսեր հրամանով մի քանի տող խարանում են նրանց երեսին [ճակատին] և աքսորում Բյութանիա: Թեոդորոս շուտով մեռնում է, իսկ Թեոփանես ապրում է մինչև Թեոդորա կայսրուհու կառավարությունը և ստանում Նիկիո եպիսկոպոսական աթոռը: Այս խստությունը հասկանալի է դառնում, եթե ի նկատի ունենանք, որ այս խռովարարները դրսից էին եկած և ուրեմն ինքնին կասկածելի: Կայսրը դառնացած էր այս առթիվ: Այդ դառնությունը արձագանք է գտել նրանց [Թեոդորոսի և Թեոփանեսի] երեսին [ճակատին] գրած [խարանված] ոտանավորում, ուր ևս հիշվում է, որ նրանք օտար տեղից [Երուսաղեմից] էին եկած[1]: Կայսեր դժգոհությունը ավելի ևս պիտի սաստկանար, որովհետև Երուսաղեմի, Անտիոքի և Ալեքսանդրիայի պատրիարքները միասին ժողովական Թուղթ էին գրել Թեոփիլոսին՝ ի նպաստ պատկերապաշտության[2]:

Հալածվածներից ոմանք Լևոն V-ի ժամանակվանից մոլեռանդ վանականներ էին: Մեթոդիոս, որ ջերմ պատկերապաշտ էր, բանտարկվեց ստորգետնյա նկուղում: Նա հետո բավականին մեղմացավ և անգամ վայելում էր կայսեր բարեկամությունը՝ հաստատվելով պալատում[3]: Հիշելու է նաև Ղազարոս անունով (de genere Chazarus) վանականի դեպքը, որ նկարիչ էր պատկերների և չանսալով հրամանին՝ այլևս չպարապել իր արվեստով, սոսկալի պատժի ենթարկվեց՝ շիկացած երկաթով ձեռքը այրեցին:

Թեոփիլոսին վերագրված բռնությունները չեն արդարանում փաստացի տվյալներով: Ստույգն այն է, որ մոլի պատկերապաշտներին արգելված էր ապրել մայրաքաղաքի մեջ, բայց ազատ էին բնակվելու քաղաքից դուրս՝ շրջակայքում: Թվում է, որ պատկերներն արգելված էին միմիայն մայրա-

---

[1] Ոտանավորը տե՛ս **Vita Theodori**, Migne, t. 116, 653; **Theoph. Cont.,** 105 և այլն:

[2] **Migne**, t. 95, 345.

[3] **Genes.**, 76; **Theoph. Cont.,** 116.

քաղաքի եկեղեցիներում, իսկ դուրսն առանձին իսկություն չկար: Մայրաքաղաքից վտարվում էին, հալածվում նաև պատկերահան վանականները:

Մատենագիրները հավաստացնում են, որ Թեոփիլոսի կինը՝ Թեոդորա [Մամիկոնյանը], ինչպես և սրա մայրը Թեոկտիստե, ջերմեռանդ պատկերապաշտներ էին և իրենց զգացումը ստիպված էին ծածկել Թեոփիլոսից: Պալատական ծաղրածու Դենդերիսը, որ նույն չափ տգեղ էր, որքան Հոմերոսի Թերսիտեսը, մի օր մտնելով կայսրուհու ննջարանը նկատեց, որ նա համբուրում է սուրբ պատկերներ[1]: Դենդերիսը հարցրեց թագուհուն, թե դրանք ի՞նչ են: Թեոդորա պատասխանեց, որ սրանք իր փոքրիկ տիկնիկներն են, որ շատ սիրելի են իրեն: Միմոսը իսկույն վազեց կայսեր մոտ: Սա ճաշի վրա էր և հարցրեց միմոսին, թե որտեղից է գալիս: «Դայակի (մայրիկի *παρὰ τὴν μάνα*) մոտից, ուր տեսա սիրուն տիկնիկներ բարձի տակ», - պատասխանեց միմոսը: Կայսրն իսկույն գլխի ընկավ, բարկացած վեր ցատկեց տեղից և գնաց կայսրուհու ննջասենյակը և սկսեց նրան նախատել կռապաշտության համար՝ վկա բերելով ծաղրածուին: Կայսրուհին ամուսնուն հանգստացնելու համար ստեց, ասելով. «Այդ այն չէ, ինչ որ կարծում ես: Ես և իմ աղախինները նայում էինք հայելու մեջ և Դենդերիսը հայելու մեջ տեսնելով մեր պատկերները կարծել է, թե տիկնիկներ են, և հիմարաբար եկել, հայտնել է քեզ»: Թեոփիլոսը ձևացրեց, թե գոհ է բացատրությունից, սակայն նրա բարկությունը նստեց: Իսկ մի քանի օր անց Թեոդորան սաստիկ ծեծել տվավ Դենդերիսին, սաստելով, որ այլևս խելքը գլխին պահի և տիկնիկների մասին ոչինչ չխոսի, որ իրեն չվերաբերող խնդիրների մեջ չմտնե և լեզվի չափն իմանա: Մի օր, երբ Թեոփիլոսը հարցրեց Դենդերիսին, թե արդյո՞ք դայակը (մայրիկը) շարունակում է համբուրել, փաղաքշել տիկնիկներին, միմոսը մի ձեռքը բերանին դրավ, մյուսը՝ հետևին և ասաց. «Սս՜, տեր կայսր, տիկնիկների մասին լռի՛ր, լռի՛ր»[2]:

---

[1] Դենդերիսի դեպքը պատկերված է **Beylié**, L'Habitation Byzantine, 20:

[2] **Theoph. Cont.**, 91. Նույն բնագրի 51-րդ էջի հակառակ կողմում Ն. Ադոնցը դարձյալ բերում է Դենդերիսի մասին տվյալ պատումը, սակայն մի փոքր այլ խմբագրությամբ. «Պալատում կար մի խղճուկ մարդ՝ ոչնչով ավելի քան Հոմերոսի Թերսիտեսը: Դենդերիս էր անունը ծաղրածու և զվարճախոս և ապերասան, և կատակներով զվարճություն էր պատճառում Թեոփիլոսին: Մի անգամ մտնելով թագուհու ննջարանը, տեսավ, որ թագուհին համբուրում է պատկերներ և ջերմեռանդորեն մերձեցնում աչքերին: Զևացնելով, թե չէ հասկանում, հարցրեց, թե այդ ի՞նչ է. «Իմ սիրունիկ տիկնիկներն են, - պարզամտում է կայսրուհին,- որ ես շատ սիրում եմ»: Կայսրը ճաշում էր, երբ մոտեցավ Դենդերիս, «Ո՞ւր ես կորել, - հարցրեց կայսրը,- որտե՞ղից ես գալիս»: Նա էլ պատասխանեց, որ Մանայի (այսպես էր անվանում Թեոդորային) մոտից, և պատմեց, թե ինչպես էր կայսրուհին բարձի տակից հանում տիկնիկներ» (**Պ. Հ.**):

Նույնպիսի մի դեպք պատմում են Թեոկտիստեի՝ կայսրուհու մոր, վերաբերյալ: Թեոկտիստե ապրում էր իր սեփական Gastria կոչված տանը: Կարծում են, որ այս տունը գտնվում էր Սամաթիա թաղում, այժմյան ավեր Sanjakdar մզկիթի տեղ, որ Հայոց Ս. Գևորգ եկեղեցուց ոչ հեռու է: Gastria [հունարեն] նշանակում է ծաղկաման, որպես թե Ս. Հեղինե (16) Երուսաղեմից բերել էր այն ծաղիկները, որ բուսած էին այնտեղ, ուր Ս. Խաչն էր գտել, և տնկել ծաղկամանով[1]:

Հաճախ էին իրենց տատին՝ Թեոկտիստեին, այցելության գալիս նրա թոռները՝ Թեոդորայի աղջիկները. թվով հինգ՝ Թեկլա, Աննա, Անաստասիա, Պուլքերիա, Մարիա: Թեոկտիստեն սովորեցրել էր նրանց պաշտել պատկերներ՝ հակառակ հոր ուղղության: Նա մի արկղ ուներ՝ լի զանազան սրբերի պատկերներով: Երբ թոռները գալիս էին, հանում էր պատկերները, մոտեցնում նրանց երեսին և քսում շրթունքին: Մի անգամ հայրը հարցնում է երեխաներին, թե ի՞նչ է տվել տատը, և ինչպե՞ս են ժամանակ անցկացրել: Մեծ աղջիկները հասկանում են և լռում, իսկ Պուլքերիա, որ փոքր էր, պատմում է, թե ինչպես տատիկը հանեց արկղից բազմաթիվ տիկնիկներ և կպցրեց իր և իր քույրերի երեսին և շրթունքին: Թեոփիլոսը զայրացավ, բայց քաշվեց բռնանալ թագուհու մոր վրա, որ ընդհանուր հարգանք էր վայելում բարեպաշտության համար[2]: Այս դեպքից հետո կայսրն աղջիկներին այլևս այնտեղ հաճախ այցելել չէր թողնում:

4. ՊԱՏԿԵՐԱՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՎԱԽՃԱՆԸ

Թեոփիլոս մեռավ 842 թվի հունվարի 20-ին: Թագաժառանգը դեռ անչափահաս էր, ուստի մեռնող կայսրը մի քանի խնամակալներ էր նշանակել: Նախ ազդեցիկ զորավար, սպարապետ Մանուել [Մամիկոնյանին], որ կայսրուհու հորեղբայրն էր, այնուհետև Թեոկտիստոս ներքինիին և Վարդ [Մամիկոնյանին]՝ կայսրուհու եղբորը[3]: Սրանք պետք է խնամեին թագաժառանգ Միքայելին և Թեոդորա կայսրուհու հետ միասին վարեին պետության գործերը մինչև ժառանգի չափահասությունը:

Մի տարի չանցած՝ 843 թվի մարտին, կայացավ եկեղեցական ժողով, ուր որոշում են վերականգնել պատկերապաշտությունը: Թեոդորա

[1] γάστρα: Հավանական է, որ այստեղ նախապես պարտեզ է եղել, ջրառատ տեղ է:

[2] Թեոկտիստեի նկարը, թե ինչպես պատկեր է տալիս Պուլքերիային, մինչդեռ մյուս քույրերը կանգնած են եղել, տե՛ս **Beylié**, op. cit., 56. Skylitzes:

[3] Վարդը հիշվում է միայն Թեոփանեսի Շարունակողի մոտ. **Theoph. Cont.**, 148:

կայսրուհին այս գործի պահով դավված է սրբերի շարքը որ տոնվում և հոկտեմբերի 13-ին: Պատմության առեղծվածային էջերից մեկն է պատկերի պաշտամունքի վերականգնումը մի այնպիսի ժամանակ, երբ կարծես երկար ջանքերից հետո հաստատված էր հակառակ ուղղությունը 815 թվից սկսված: Հարցի քաղաքական կողմը քաքնված է մեր աչքից: Ժամանակակիցները տրամադիր են դա բացատրելու Թեոդորայի և իր ընտանիքի բարեպաշտությամբ: Թեոդորայի և իր մոր՝ Թեոկտիստեի, տիկնիկների թեքևամիտ զրույցները թվում է, թե հորինված են հետին թվով՝ նրանց պատկերապաշտությունը փաստաբանելու համար: Ամեն կերպ աշխատել են ցույց տալ, որ բոլոր այն անձերը, որ մասնակից են դարձել պատկերապաշտության հաստատման, այլ շարժառիթ չունեին, քան կրոնական զգացումը: Մանուելի մասին հերյուրված է մի պատմություն, որպես նրան ներշնչողները եղել են Ստուդիոնի վանականները: Մանուելը հիվանդանում է, և վանականներն իրենց աղոթքներով բժշկում են նրան և պարտադրում, որ ի տրիտուր վերականգնե պատկերները[1]: Մի ուրիշ զրույցի համեմատ, հիվանդացողը ոչ թե Մանուելն էր, այլ նրա կինը՝ Հեղինեն, և բուժողը՝ Նիկողայոս մանականը, նույն Ստուդիոնի միաբանությունից[2]: Հանգիստ չէ թողված և հանգուցյալ կայսրը՝ Թեոփիլոս: Նա որպես թե մահվան անկողնում, նախքան աչքերը փակելը, ընդմիշտ զղջացել է և պատվիրել Թեոդորային ժողով գումարել և ուղղել իր մոլորությունը, վերահաստատելով պատկերները: Անհիմն հերյուրանք: Արդարև, բավական է հիշել այն, ինչ որ պատմվում է Թեոդորայի մասին, որ սա տատանվում էր հարցել իր խորհրդակիցներին, կամենալով պաշտպանել իր ամուսնու քաղաքականությունը: Թեոդորան իր ամուսնու մասին այն կարծիքն ուներ, թե նա խորաթափանց միտք էր և գիտեր ինչ որ հարկավոր էր անել, և այժմ «*πῶς τῶν ἐκείνου διαταγμάτων ἀμνημονήσαντας είς ἑτέραν διαγωγὴν ἐκτραπείημεν*, ինչպես մոռանալով նրա կարգավորությունը, ընդունենք մի ուրիշ ուղղություն»[3]:

Ակներև է, որ Թեոդորան այլ համոզմունք չէր կարող ունենալ, քան իր երկրպագելի ամուսինը: Հետևապես, ոչ նրա և ոչ էլ նրա հորեղբոր՝ Մանուել [Մամիկոնյանի] ենթադրյալ բարեպաշտությունը չէր կարող հիմք ծառայել նոր եկեղեցական ուղղության: Ուրիշ մեկնություն է որոնելու:

---

[1] **Theoph. Cont.**, 148-149.

[2] **Vita Nicolai Studitae**, Migne, t. 105, col. 916.

[3] **Genes.**, 80.

Թեոդորայի շրջապատը կազմում էին նախ խնամակալները՝ Թեոկտիստոս և Մանուել, ապա՝ Մեթոդիոս եպիսկոպոսը, որ Թեոփիլոսի օրով ապրում էր պալատում և Թեոդորայի հարազատները՝ մայրը, եղբայրները և քույրերը: Ժամանակակից մի հեղինակ Թեոկտիստոսին է համարում գլխավոր թելադրիչը նոր եկեղեցական քաղաքականության[1]: Գենեսիոսն ավելացնում է նաև Մանուելին[2], իսկ Թեոփանեսի Շարունակողն այդ պատիվը վերագրում է միայն Մանուելին[3]: Մի ուրիշ տեղեկությամբ, նախաձեռնությունը գալիս է Օլիմպոս լեռան ճգնավորներից: Նրանցից Հովհաննիկ(իոս), որ կանխատեսությամբ շնորհի ուներ, Արշակի (Arshakies) և Նիկոմեդիայի եպիսկոպոս Եսայիի հետ թելադրում են Մեթոդիոս եպիսկոպոսին, իսկ սա կայսրուհուն՝ ի նպաստ պատկերների[4]:

Միքայել Սինկելլոսի վարքի մեջ ասված է, որ Հովհաննիկ(իոս)ը կայսրուհու և ծերակույտի հարցին ի պատասխան, Մեթոդիոսին է հանձնարարում որպես պատրիարք: Մինչդեռ, ժողովրդական թեկնածուն Միքայելն էր[5]:

Հավանականն այն է, որ գործի ներշնչողներն էին Թեոկտիստոս և Մեթոդիոս եպիսկոպոս[6]: Վերջինս գիտուն անձ էր, բայց բարոյական

---

[1] **Georg.. Mon.,** 811. ὑποθήκῃ δὲ καὶ παραινέσει θεοκτίστου κανικλείου καί λογοθέτου.

[2] **Genes.**, 78.

[3] **Theoph. Cont.,** 148.

[4] **De Theophilii,** Imperatoris absolutione, p. 25. «Analecta Byzantino-russica», edidit W. Regel, Petropoli, 1891.

[5] Vita Michaelis Syncelli, տե՛ս "Известия", т., XI, 227 (1906).

[6] Մեթոդիոս Սիրակուզացի, Կ. Պոլսի վանքերից մեկի վանահայր: Պատկանում է այն վանականների թվին, որ Լևոն V-ի օրով՝ 815 թվին, փախել էին Հռոմ, և այնուհետև պապի միջամտությամբ Միքայել II-ի օրով վերադարձել հետ՝ պապական դավանաբանական թղթով: Սակայն նույն Միքայելի կարգադրությամբ 821 թվին ձերբակալվեց դավանաբանական վեճերի համար և ինը տարի՝ մինչև 829 թվի հոկտեմբերը, մնաց բանտում՝ Նիկոմեդիո ծոցում գտնվող Ս. Անդրեաս Առաքյալի կղզում՝ Akritas=Տուզլու-Բուրնու հրվանդանից ոչ հեռու (**Vita Meth.**, I, 5, 8): Թեոփիլոս կայսեր կարգադրությամբ Մեթոդիոս եպիսկոպոսն արգելափակվեց Անտիգոնոսի կղզում (Antigoni), սակայն շուտով արժանացավ կայսեր բարեհաճությանը և նրա գիտությամբ զաղտնի տեղափոխվեց պալատ (**Gen.**, 76; **Theoph. Cont.,** 116): Մահացել է 847 թ. հունիսի 14-ին:

նկարագիր չկար: Սկզբում կատաղի պատկերապաշտ, սակայն հաշտվում է Թեոփիլոսի պես մոլի պատկերամարտի հետ և ապրում նրա պալատում: Թեոփիլոսի մեռնելուց հետո, աչք ունենալով պատրիարքական գահին, նորեն հարում է պատկերապաշտությանը: Թեոկտիստոս ներքինի էր: Սա էր կործանել Լևոն V [Հայկազնին]: Նա իր առանձնաշնորհ դիրքը պահպանել էր ինչպես Միքայել II, այնպես էլ Թեոփիլոս կայսրերի օրով և հասել դրոմոսի լոգոթետության: Թեոփիլոսի մահվամբ, Թեոկտիստոսի դրությունը կարող էր խախտվել: Հայերը, որ շրջապատել էին գահը, հիմ չունեին սիրելու Թեոկտիստոսին: Սա իր դրությունն ապահովելու համար որոնում է նեցուկ և այն գտնում **պատկերապաշտների բանակում:** Պատկերապաշտները գլխավորապես հույն վանականներն էին: Պատկերամարտությունը՝ վերսկսած Լևոն V Հայկազնի ձեռքով, ավելի համակիրներ ուներ հայերի մեջ:

Թեոկտիստոսը նախ իր կողմն է ձգում Մեթոդիոս եպիսկոպոսին, անշուշտ, գայթակղեցնելով պատրիարքական գահի ակնկալությամբ: Երկուսը միասին սկսում են համոզել Թեոդորա թագուհուն, և հավատացնում են, որ գահը, տունը և նրա որդին՝ Միքայելը, վտանգի մեջ են: Ակնարկը, անշուշտ, պրոտոստրատոր, մագիստրոս, սխոլերի դոմեստիկոս, նշանավոր զորավար Մանուել Մամիկոնյանի՝ թագուհու հորեղբոր, և կեսար Վարդ Մամիկոնյանի՝ թագուհու եղբոր, հասցեին էր, որոնք բավականին ազդեցիկ էին տիրանալու գահին: Թեոկտիստոսն արդեն հաջողել էր կործանել պատրիկ Թեոփոբոս խորհրդավոր անձին: Թեոփիլոս մահվան անկողնում հրամայեց գլխատել նրան, անշուշտ, Թեոկտիստոսի ներշնչող շշունջի՝ ազդեցությամբ[1]:

Թեոկտիստոս իրեն օգնական ուներ և սխոլերի դոմեստիկոս Պետրոնաս [Մամիկոնյանին]՝ թագուհու և կեսար Վարդի եղբորը: Ազատվելով ամենավտանգավոր ախոյաններից՝ Թեոկտիստոս պիտի ջանար թուլացնելու գահի շուրջը վխտացող ազդեցիկ հայերի հեղինակությունը: Այս նպատակով է, որ նա հարուցեց պատկերների խնդիրը, երևի հուսալով, որ հայերը կընդդիմանային և կկորցնեին ժողովրդի աչքում իրենց մեծ հռչակն ու հմայքը:

Թեոկտիստոսի հաշիվները մասամբ միայն արդարացան: Հայ ղեկավար ուժերը զիջան պատկերների խնդրում, պահեցին իրենց դիրքը և ի վերջո տապալեցին Թեոկտիստոսին:

---

[1] Թեոփոբրոս ծագումով մեծազարմ պարսիկ էր (միգուցե՞ պարսկահայ), որ ամուսնացած էր Թեոդորա կայսրուհու քրոջ հետ: Նրա մասին տե՛ս **Sym. Mag.**, p. 646; **Georg. Mon.**, p. 810; **Leo Gramm.**, p. 227-228:

եկեղեցական ժողովի նախապատրաստությունները տևեցին մի տարի: 843 թ. մարտ ամսին [11-ին] կայացավ մեծ դատաստանը: Ժողովը գահազրկեց Հովհաննես Է Քերական պատրիարքին և 843 թ. մարտի 11-ին նրա տեղ ընտրեց Մեթոդիոսին (843-847): Մատենագիրների տեղեկությամբ, կայսրուհին Հովհաննեսից պահանջեց միանալ ժողովականներին, սպառնալով այլապես գահընկեց անել[1]: Սակայն Հովհաննես մնաց հաստատ իր համոզման՝ յամռք յուր բոլոր թշնամիներին, որոնք ամեն ջանք ու ճիգ էին թափել սևացնելու նրա հիշատակը: Մեթոդիոս, որ Թեոփիլոսի օրով կեղծ, թե անկեղծ պատկերամարտ էր, չդժվարացավ համակերպելու նոր կացության՝ ամեն ինչ զոհելով պատրիարքական գահը գրավելու անհագուրդ փափագին:

Հովհաննես պատրիարքին գահընկեց հայտարարելուց հետո, Կոստանդին Հայը[2], որ գիշերապահի գնդի (հսկման գնդի) դրունգարն էր, հրաման ստացավ մի քանի զինվորականների հետ գնալ պատրիարքարան և այնտեղից հեռացնել Հովհաննեսին: Սակայն պատրիարքը դանդաղում էր հեռանալ: Եվ երբ Վարդը գնաց իմանալու պատճառը, Հովհաննես գանգատվեց, որ զինվորներն իրեն հետ վարվել են կոպտաբար և անգամ վիրավորել և ցույց տվավ սուսերահար վերքը: Թեոփանեսի Շարունակողը

[1] **Theoph. Cont.,** 151; Georg., 811; Sym. Mag., 647.

[2] Ըստ Սիմոն Մագիստրոսի, դրունգար Կոստանդին τῆς βίγλας Թովմաս պատրիկի և վիգլայի դրունգար Գենեսիոսի հայրն էր ὁ πατὴρ Θωμᾶ πατρικίου καὶ Γενεσίου (= Theod. Mel., 174 = Leo Gram., 249):

Այս Գենեսիոս էր μάγιστρος՝ Մագիստրոս Լևոն VI-ի օրով (տե՛ս C. de. Boor, Zu Genesios. «Byzantinische Zeitschrift», Bd. 10, 1901, p. 62), իսկ Թովմաս՝ լոգոթետ τ. δρόμου: Այս Թովմասի որդին էր պատմաբան Գենեսիոս (Genesios), որ էր քարտուղար χαρτουλάριος ὁ ἐπὶ τοῦ κανικλείου, Կոստանդին VII Ծիրանածնի ժամանակ: Իր գործը գրել է 944-948 թվականների ընթացքում:



պատմում է, որ Հովհաննեսն ինքն էր իրեն վիրավորել, մեկ այլ աղբյուր հիշում է, որ եղունգի փոքր դանակով էր իրեն վիրավորել[1]: Սակայն մի ուրիշ աղբյուր վկայում է, որ Հովհաննեսն այնքան էր հուզված դեպքերից, որ իրոք ցանկացել էր վերջ տալ իր կյանքին[2]:

Այս հակասական տեղեկություններից դժվար է վերահաս լինել ճշմարտության: Թվում է, որ զինվորներն իրոք վիրավորել էին հայրապետին իրենց բիրտ վարմունքով, ինչպես որ ենթադրում են[3]:

Ժողովականների հեղհեղուկ և ճկուն բարոյականը փայլում է մանավանդ, երբ գործը հասնում է Թեոփիլոս կայսեր անձին, արդյո՞ք նզովել նրա հիշատակը, նման մյուս բոլոր պատկերամարտների, որոնք ժողովի կողմից արժանացան մեծ անեծքի: Ժողովականներն ուզում էին մի կերպ փրկել կայսեր հիշատակը ի հաճույս թագուհու: Եվ ահա մի շարք առասպելներ են հերյուրում՝ արդարացնելու համար իրենց ապօրինի վարմունքը: Նախ՝ Թեոդորա կայսրուհին հայտնում է ժողովին, որ իր ամուսինը մեռնելիս զղջացել է և վերջին շունչը տվել է Քրիստոսի պատկերի շրթունքներին[4]: Պատմում են նաև, որ թագուհին գաղտնի խոսակցություն է ունեցել քանի մի ազդեցիկ վանականների հետ, ոչ միայն Մեթոդիոսի, այլև լեսբոսցի Սիմեոն Սյունականի, նրա եղբոր՝ Գեորգի հետ և ասել, որ կայսրը աջահամբյուր (eujlogiva) է թողել նրանց համար, եթե միայն ընդունեն նրան որպես ուղղափառի: Սիմեոնը կտրտվելուց հետո համաձայնում է[5]: Սիմեոնը դուրս է բերած այստեղ որպես հեղինակավոր ոմն, որ վիճում է Հովհաննես Քերականի հետ Թեոդորա կայսրուհու և Միքայելի ներկայությամբ, և որ նա է, որ հաջողեցնում է Մեթոդիոսի ընտրությունը և ինքն էլ իբրև թե ստանում է սինկելլոսի պաշտոն պատրիարքարանում[6]:

Ուղղափառության մասին ճառող այս հոգևորականների համար խիստ բնորոշ է նրանց կաշառակերությունը և անձնական շահագրգռությունը: Թեոփիլոսի հոգու ազատ արձակման վերաբերյալ մի ամբողջ գրություն է հասել մեզ, ուր պատմվում են բոլոր մտացածին զրույցները, որ պատրաստել էին սուրբ հայրերը Թեոփիլոսին անմեղ հռչակելու:

---

[1] **Acta Davidis,** 248.

[2] **Theophanes**, De exsilio S. Nicephori, Migne, t. 100, col. 164.

[3] **G. Finlay,** History of the Byzantine and Greek Empires from 716-1453, London, 1906. Schlasser, Geschicte des Bilderstürm. **J. B. Bury,** A History of the Eastern Roman Empirer from the Fall of Irene to the Accession of Basil I, London, 1912, p. 148. «History of Greece» vol. II, 1876.

[4] **Theop. Cont.**, 153.

[5] **Acta Davidis,** 244.

[6] Նույնը, 250:

Թեոփորոսի սպանությունից հետո Թեոփիլոս ծանր հիվանդ էր և խիստ անհանգիստ: Իբրև Թեոկտիստոս ծածուկ կրում էր վզից կախ Տիրոջ պատկերը: Թեոփիլոս մի օր նկատեց պատկերը և նշան արեց, որ Թեոկտիստոս մոտենա իրեն: Թեոկտիստոս դողում էր երկյուղից, կարծելով որ իրեն սպասում է Թեոփորոսի բախտը: Բայց անչափ զարմացավ, երբ Թեոփիլոս բռնեց պատկերը և տարավ շրթունքներին և իսկույն զգաց թեթևություն իր ցավերից: Ամուսնու հոգեվարքին թագուհին մոտեցրեց նրան համբուրելու Հիսուս Քրիստոսի և Ս. Կույսի պատկերները: Մի այլ զրույցի համաձայն, թագուհին երազ է տեսնում, թե ինչպես Թեոփիլոսին շղթայված ներկայացնում են մի մեծ մարդու, որ գահի վրա էր նստած և ճակատին կրում էր Քրիստոսի նկարը: Թագուհին սկսում է լալ և աղերսել իր ամուսնու համար: Դատավորն անմիջապես հրամայում է Թեոփիլոսին պահող հրեշտակներին՝ արձակել նրա շղթաները[1]:

Մի ուրիշ առասպել. Մեթոդիոս գրեց բոլոր հերետիկոս կայսրերի անունը մի գրքի մեջ և դրեց սեղանի վրա: Թեոփիլոսի անունը ևս մտցրած էր գրքի մեջ: Մեթոդիոս երազ է տեսնում, թե ինչպես մի մարդ նրան ասում է, որ Թեոփիլոսին ներում է շնորհված: Արդարև, երբ մոտենում է սեղանին, վերցնում է գիրքը, տեսնում է, որ Թեոփիլոսի անունը այլևս չկար և նրա տեղ բաց էր[2]:

Պատկերների վերականգնման հանդիսավոր տոնը կատարվեց 843 թվի մարտի 11-ին՝ Մեծ պահոց առաջին կիրակին: Ամեն կողմից մայրաքաղաք թափվեցին կրոնավորներ շրջակա մենաստաններից՝ ահագին բազմությամբ: Գիշերային հսկումը կատարվեց մայրաքաղաքի Վլաքերնա թաղամասում գտնվող Ս. Կույսի (Աստվածածնի) եկեղեցում: Կիրակի առավոտյան կայսրուհին, մանուկ կայսրը և ծերակուտականները՝ պատրիարքի և եկեղեցական առաջնորդների ահագին թափորով շարժվեցին դեպի Ս. Սոփիա, խաչերով, պատկերներով և ջահերով:

Ժամանակակից մատենագիրները առասպելների հետևից ընկած անփույթ են գտնվել նկարագրելու մեզ երկու բանակների վերջին մրցությունը և հաղթանակը: Պատկերամարտների դիմադրության մասին ոչինչ չգիտենք: Գործն այսպես է ներկայացրած, կարծես պատկերապաշտների հակառակորդներն իսկույն անհետացել էին: Սակայն ինչ-ինչ նշաններից երևում է, որ դիմադրություն եղել է: Բավական է հիշել Մեթոդիոսի խայտառակ դեպքը: Պատմում են, որ պատկերամարտները դրդել են մի

[1] **De Theoph.**, absolutione, 32, տե՛ս «Analecta Byzantino ussica».

[2] Նույնը:

կնոջ գանգատվելու, որ Մեթոդիոսը գայթակղեցրել է նրան, մինչև անգամ որդի է ունեցել: Պաշտոնական քննություն է նշանակվում: Մեթոդիոս ուրիշ միջոց չէ գտնում արդարանալու, քան բաց անելու (մերկացնելու) իր ամոթանքը (մերկությունը) և ցույց տալու, որ ինքը մարմնապես անընդունակ էր այն հանցանքին, որ վերագրվում էր իրեն: Այնուհետև պատվական հայրապետը, առանց ամաչելու, բացատրում է, որ Հռոմ եղած ժամանակ մարմնական ցանկությունն այնպես էր բուռն այրում, տոչորում իրեն, որ ստիպված Պետրոս Առաքյալից օգնություն աղերսեց: Իր աղոթքների շնորհիվ նա երազում տեսավ Առաքյալին, որի հրաշագործ շոշափումը ազատեց մարմինը և միտքը այլանդակ կրքերի և տարփանքի խառնումից: Կինն էլ իբրև թե խոստովանում է ողջ ճշմարտությունը, որ ինքը խաղալիք է եղել թշնամիների ձեռքին և, որ այս ամբողջ պատմությունը շինծու էր: Գենեսիոս, որ պահել է այս պատմությունը, հայտնում է, որ կինը Մետրոփանեսի մայրն էր, որ հետո դարձավ Զմյուռնիայի եպիսկոպոսը[1]:

Պատկերամարտության հիմնական կառույցները վերացան, իսկ նրա մնացորդները դատապարտվեցին 869 թվի ժողովում[2]: Սակայն հաղթությունը բացարձակ չէր: Պատկերամարտությունը թողեց իր հետքերը: Նրա ազդեցությամբ էր, որ եկեղեցուց վերացան քանդակագործ պատկերները: Լուսամիտ և կիրթ հասարակությունն ընդդեմ էր պատկերների պաշտամունքին, բայց ընդունում էր նրանց գործածությունը եկեղեցիներում, սակայն առանց պաշտամունք մատուցանելու: Մի տեսակետ, որ պարզ արտահայտված է Միքայել II Թլվատի նամակում առ ֆրանկների կայսր Լյուդովիկոս I Բարեպաշտը և որը լուրջ պատկերամարտերի տեսակետն էր: Վեճը միշտ տանում է դեպի ծայրահեղություն, երկու կողմն էլ մեղանչում էին՝ չափազանցության հասցնելով իրենց վերաբերումը դեպի պատկերները:

Քրիստ[ոնեական] եկեղեցին, որպես արևելյան հաստատություն, պիտի խորշեր աստվածայինի մարմնավոր արտահայտությունից: Սակայն արևմուտքի համար, որ սովոր էր հելլեն արձանագործության հրաշակերտ հիշատակարաններին, որ ներկայացնում է հեթանոսական աստվածներ, հասկանալի է, խոտելի չէր պատկերագրությունը: Ճշմարտությունը միջին ուղու վրա էր՝ **պատկերահարգություն** և ոչ **պատկերապաշտություն** (17):

---

[1] **Genes.**, 83-84.

[2] **Mansi**, t. XVI, 389.